# ԱՌԱՋԸՆԹԱՑ ԹՄԲԿԱՀԱՐ

(յերկձայն խմբերգ)

Յերաժշտ. ՄԻՔ. ՄԻՐԶՈՅԱՆԻ

*Մարշի տեմպով*

Խոսք՝ Հ. ԿՈՍՏԱՆՅԱՆԻ

*Առաջընթաց թմբկահար*
*Մի մանուկ, մի մանուկ,*
*Հետևում են խմբակներ*
*Շարեշար, շարեշար ․․*
*Տրա լա, լա… և այլն…*

*Դըրընգում է ու թընդում*
*Մի թմբուկ, մի թմբուկ,*
*Հառա՜ջ, հառա՜ջ, հեռավոր*
*Ճանապարհ, ճանապարհ…*
*Տրա լա լա… և այլն…*

*Ու անընդհատ սեծ շարքով,*
*Միշտ կարգով, միշտ կարգով,*
*Ձեռներդ վեր, միշտ ըզգաստ,*
*Միշտ պատրաստ, միշտ*
*պատրաստ…*
*Տրա լա լա… և այլն…*

ՎԵՑԵՐՈՐԴ ՏԱՐԻ

Բանվոր դասակարգի պայքարում, պիոնե՛ր, պատրա՛ստ.

# ՊԻՈՆԵՐ

ՊԱՏԱՆԵԿԱԿԱՆ ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ ԱՄՍԱԳԻՐ

ՈՐԳԱՆ ՀԼԿՅԵՄ ԿԵՆՏԿՈՄԻՆ ԿԻՑ ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԿԵՆՏԲՅՈՒՐՈՅԻ ՅԵՎ ԼՈՒՍԺՈՂԿՈՄԱՏԻ

Խմբագրության հասցեն՝ Յերեվան, Ռուբենի № 2

1928

№ 1—2 ՀՈՒՆՎԱՐ—ՓԵՏՐՎԱՐ № 1—2



ԿԱՐՄԻՐ ԳՎԱՐԴԻԱԿԱՆՆԵՐ

ԳՈՒՐԳԵՆ ՄԱՀԱՐԻ



—Նստիր,—ասաց ընկեր Լենինը,—յես հիմա կը վերջացնեմ...

Լեվիկը նստեց։

Նա աչքերը չէր կարող հեռացնել ընկեր Լենինի դեմքից։ Ինչքա՜ն կնճիռներ կան նրա ճակատի վրա, այդ յերևի նրանից է, վոր նա շատ է աշխատում...

Նա թղթեր է կարդում, գրում է թղթերի վրա, յերբեմն ժպտում է, յերբեմն մռայլվում, բայց ինչ էլ վոր անում է, միշտ յեվ միշտ նմանվում է նկարներում Լեվիկի տեսած Լենինին։ Յեվ այսպես, Լեվիկը տեսնում է կենդանի Լենինին, իսկակա՜ն Լենինին, յեվ նրա սիրտն ուրախությունից տրոփում է։

Ընկեր Լենինը գրիչը վար դրեց յեվ դարձավ Լեվիկին.

—Ինչպե՞ս են մեր պիոներները...—հարցրեց նա բարակ ժպտալով։

—Շատ լավ են, ընկեր Լենին...—նա ուզեց պատասխանել, վոր մայիսմեկյան շքերթին նրան չհանձնեցին դրոշակ բռնելը՝ իր փոքրության պատճառով, բայց քաշվեց, հո չի՞ կարելի այդպիսի փոքրիկ խնդիրներով զբաղեցնել ընկեր Լենինին...«Փոքրի՜կ», մռմռաց Լեվիկը, հիշելով թե ինչքան ցավ պատճառեց իրեն այդ «փոքրիկ» արգելքը... Այնուամենայնիվ նա այդ մասին վոչինչ չասեց յեվ սպասեց ընկեր Լենինի նոր հարցին։

—Ուրեմն ամեն ինչ լա՞վ է գնում...

—«Դե արի ու մի՛ ասա...»—անցավ նորից Լեվիկի մտքով, բայց նա ելի զսպեց իրեն։

—Լավ է գնում, ընկեր Լենին...

—Գիտե՞ն մեր պիոներները՝ թե ինչ է անցնում դառնում աշխարհում,—հարցրեց նորից ընկեր Լենինը։

—Այո, գիտեն...

—Ի՞նչ գիտեն, ասա՛ մի քանի բառ...

Լեվիկը պատմում է...

—Է՜,—ասաց ընկեր Լենինը,—ենքան էլ լավ չգիտեք՝ թե ինչ է անցնում դառնում... գիտե՞ք դուք, օրինակ, տասնյերկու տարեկան չինացի Չի-Լիի յեվ նրա հոր՝ Չի-Սի-Լինի մասին...լսե՞լ եք...

—Վոչ,—ասաց Լեվիկն ամոթահար։

—Դե, լսիր...

Յեվ մեծ ընկեր Լենինը պատմեց հետևյալ փոքրիկ պատմությունը.

...Նանկինում ապրում եր չին բանվոր Չի-Սի-Լինը։ Նա վաղ առավոտից մինչեվ իրիկուն աշխատում եր թեյի գործարանում անգլիացիների համար յեվ հազիվ կարողանում եր պահել իր ընտանիքը խաշած բրինձով։ Յերբ դեռ փոքր եր Չի-Լին, կախվում եր մոր փեշերից ու նայում Չինաստանի վոսկեգույն արևին յեվ ուրախանում, վոր կարող է նայել նրան վորքան կամենա. իսկ յերբ մեծացավ, դարձավ 11-12 տարեկան, տեսավ յեվ զգաց, վոր Չինաստանի արևը բոլորինը չէ. նա մեկին շատ է սիրում ու լուսավորում, մյուսին՝ քիչ։ Չի-Լին հաճախ դուրս եր գալիս իր նկուղից, անցնում եր յերկու փողոց յեվ Ժիմ-Զուժ գետի ափից նայում եր անգլիական հարուստ թաղամասի սպիտակ շենքերին. վորքա՜ն նրանք գեղեցիկ եյին յեվ արևառատ. Չի-Լիին թվում եր, վոր այդ շենքերի մեջն էլ պիտի լինի մեկ-մեկ արև, այնպիսի արև, վորպիսին Չինաստանի յերկնքի վրա կա յեվ մեկ է։ Չի-Լին տուն եր դառնում, տխուր յեվ մտախոհ, ուտելու իր բաժին խաշած բրինձը, լսելու իր հայրիկի տրտունջները աղքատ դժվարության մասին, տեսնելու մայրիկի տխուր աչքերը յեվ քնելու անհանգիստ քնով...

Այսպես անցնում եյին օրերը։

Մի օր հայրը սովորականից շուտ գնաց գործի յեվ յերեկոյան չվերադարձավ. իսկ ուշ յերեկոյան Չի-Լին լսեց հրացանների յեվ գնդացիրների դղրդոց՝ օտար թաղամասի սահմաններում։

Վեր կացավ Չի-Լիի մայրիկը, բրինձ խաշեց, փաթաթեց լաթաշի մեջ յեվ դարձավ նրան.

—Չի՛, դու մնա, յես կգամ շուտ...

—Ե՛, ե՛, ե՛,—ասաց Չի-Լին,—յես էլ քեզ հետ...

—Չե՛, չի՛ լինի, Չի՛, դու մնա... Չի-Սի-Լինը հիմա քաղցած է, կռվում է... գնամ շուտ, շուտ գամ...

—Ինչի՞ յե կռվում, մա՛...

—Կռվում է, վոր ազատ լինենք, Չի-Լի, վոր կուլին էլ ապրի, ապրի մարդու պես...

—Ե՛, ե՛, ե՛—,ասաց Չի-Լին,—յես էլ քեզ հետ...յես էլ ուզում եմ հայրիկի հետ կռվել, մա՛...

Չէ,— ասաց մայրիկը,— չէ, դու հիմա... դու դեռ չէ... — ու գնաց մայրիկը։

Պառկել է Չի-Լին ու քունը չի տանում: Դրսից լսվում են հրացանների ձայները՝ ավելի յեվ ավելի մոտեցած։ Վեր է կենում Չի-Լին յեվ սկսում է հագնվել. նա պիտի գնա, նա չի կարող չգնալ... Յեվ այն ժամանակ, յերբ ուզում է դուռը բաց անել դուրս գնալու համար, դրսից լսվում են ոտնաձայներ. Չի-Լին յետ է քաշվում. ներս է մտնում մայրը. բարակ ձայնով լալիս է նա յեվ մղկտում։— Ի՞նչ է,— մտածում է Չի-Լին,— վաղն արդեն էլ չի՞ ծագելու... — Բայց նա տեսնում է, որ մայրիկի յետեվից ներս է մտնում մի կուլի՝ ուսերին դրած յերկու փայտ.. ապա ներս է յերկարում պառկածի մարմինը, հետո յերկրորդ կուլին, որը բռնել է նրա գլուխը.. նրանք զինված են։

—Չի-Լի,— ասում է մայրիկը,— հայրիկին սպանեցին...

— Ե՛, ե՛, ե՛,— լալիս է Չի-Լին,— վաղն էլ արդեն չի՞ ծագելու...

Չի Սի-Լինի դիակը վար են դնում...

Հետո տեսնում է Չի-Լին, որ յերկու կուլիները ուզում են իրենց զենքերը, ինչ որ մխիթարական խոսքեր են ասում, վերցնում են հայրիկի փամփուշտները յեվ շտապում են դեպի դուռը...

— Ե՛, ե՛, ե՛,— լալիս է Չի-Լին,— վաղն էլ արդեն չի՞ ծագելու...

— Կը ծագի,— ասում է կուլիներից մեկը յեվ յետ է նայում Չի-Լինին.

— Կը ծագի...

Չի Լին նայում է կուլու աչքերին, յեվ նրան թվում է, որ այնտեղ, նրա աչքերում հենց վառվում է Չինաստանի արեվը...

Գնում են նրանք կռիվը շարունակելու...

— Այստեղ կարծես թե վերջանում է պատմությունը,— ասում է ընկեր Լենինը...

— Իսկ ո՞ւր է հիմա Չի-Լին,— հարցնում է Լեվիկը, խեղդելով կոկորդում հեկեկանքը։



Գնում են նրանք կռիվը շարունակելու . . .

— Չի-Լի-ները մեծանում են՝ յետ խլելու համար Չինաստանի արեվը .. Պատրա՞ստ եք օգնելու նրանց...

Ու Լեվիկը գոռում է ամբողջ կոկորդով.

— Մե՛նք... մի՛շտ .. պատրա՛ստ... փոքրիկ Լեվիկը լսում է իր ձայնը յեվ զարթնում։

---

ՍԵՅՐԱՆ ԱՐՇԱՎԻՐ

## ԲԱՆՎՈՐՈՒՀՈՒ ՅԵՐԳԸ

Արեվի պես,
սիրակեզ
իմ բալիկ.
վառվռուն ու թավռուն
իմ ջանիկ.
օրերի լույս,
կյանք ու հույս
իմ բալիկ.
մեծացիր, վոր քեզ գրեմ
հոկտեմբերիկ։

Այ, տես,
թմբուկով,
չիրգով,
շարքերով սիրուն,
պիոնիրուն են գնում.
իմ բացված գարուն։
Շուտով սրանց ու անկեղծ
քեզ նրանց կտամ,
դու էլ դառնաս նրանց պես
ու նոր կյանք ժառնես։

Արեվի պես,
սիրակեզ
իմ սիրուն բալա,
վառվռուն ու թավռուն
իմ անուշ լալա.
օրերի լույս,
կյանք ու հույս
իմ անուշ բալիկ,
մեծացիր, վոր քեզ գրեմ
հոկտեմբերիկ։



# ՄԱԿՍԻՄ ԳՈՐԿԻ

Մաքսիմ Գորկուն ճանաչում է ամբողջ աշխարհը։ Գորկին համարվում է համաշխարհային գրող։

Նրան գիտեն և պատանի ընթերցողները։ Նրա պատմվածքներից շատերը տեղ են գտել նաև մեր դասագրքերում։



Մաքսիմ Գորկի

Այս տարի լրանում է Գորկու գրական գործունեության 35 տարին և նրա ծննդյան 60-ամյակը։

Գորկու իսկական անունը Ալեքսեյ Մաքսիմովիչ Պեշկով է։ Նա ծնվել է 1868 թվին, մարտի 28-ին, արհեստավորի ընտանիքում, Նիժնի-Նովգորոդում։ Հինգ տարեկան էր, յերբ Գորկին զրկվեց հորից և ինը տարեկան էր, յերբ մայրն էլ մեռավ։ Վորբ Ալեքսեյը փոխադրվում է պապի մոտ և զրկանքներով լի կյանք վարում։ Յոթ տարեկան էր, յերբ նա ընկավ դպրոց, բայց դպրոցում սովորեց 7 ամիս միայն։ Այնուհետև Գորկին վոչ մի դպրոցում չսովորեց և նրա «համալսարանները» հանդիսացան ամենադաժան և անսովոր կյանքը և համառ աշխատանքը ինքնակրթության վրա։ Տասը տարեկան Գորկուն տալիս են կոշկի խանութն «աշակերտ»։ Հետո նա աշխատում է գծագրի մոտ, խոհարարի աշակերտ է դառնում Վոլգայի շոգենավերից մեկում։ Հետագայում աշխատում է նա յերկաթգծում ծառայի պաշտոնով, նավահանգստներում բեռնակիր է դառնում և այլն։

Պատանի Գորկին հարյուրավոր քաղաքներ ու գյուղեր է տեսել, տարբեր ազգությունների, գործի հազարավոր մարդկանց և պատահել։ Յեվ այդ բոլորը Գորկուն հարուստ նյութ են մատակարարել իր պատմվածքների ու վեպերի համար։

Մաքսիմ Գորկին մասնակցել է նաև բանվորական հեղափոխական շարժմանը։ Նա մի քանի անգամ բանտարկվել է ցարական կառավարության կողմից, աքսորվել յերկրից։ Մաքսիմ Գորկին և Լենինը մոտ ընկերներ են յեղել և իրար շատ են սիրել։ Լենինը Մաքսիմ Գորկուն գնահատում էր այն բանի համար, վոր Գորկին իր գրվածքների մեջ հարազատորեն նկարագրել է աշխատավորների և բանվորների կյանքը և դրությունը ցարական դաժան կարգերում։ Նա իր գրվածքներով բողոքել է տիրող կարգերի, անարդարության ու բռնության դեմ։ Գորկին միշտ համոզված է յեղել, վոր բանվոր դասակարգի հեղափոխությունը կազատագրի թե բանվորներին և թե բոլոր աշխատավորներին։ Յեվ այդ հեղափոխության հաղթանակի համար նա յերկար տարիներ աշխատել է իր գրչով ու գործով։

Ահա թե ինչու Գորկու գրական գործունեության 35-ամյակը պատրաստվում են տոնել Խորհրդային Միության բանվոր դասակարգը և նրա կազմակերպությունները։

Յեթե վորևե մեկն ուզում է ուսումնասիրել բանվորների, արհեստավորների և այլ աշխատավորների դրությունը ցարական կարգերում, նա անպայման պիտի կարդա Գորկու գրվածքները։

«Ալեքսեյ Մաքսիմովիչ Պեշկով» պատմածքը, վորը տպագրում ենք «Պիոների» այս համարում, կազմված է նրա ինքնակենսագրական բնույթ կրող մի շարք պատմվածքներից։

---

Ընկերներ, դպրոցներում կազմակերպեցեք յերեկույթներ, ցերեկույթներ, նվիրված Մաքսիմ Գորկու 35-ամյա գրական գործունեությանը։ Այս առթիվ հարց բարձրացրեք դպրոցական խորհուրդներում։ Աշխատեցեք, վոր դպրոցական գրադարանները ձեռք բերեն Մ. Գորկու պատմվածների հայերեն թարգմանությունները։ Խնդրեցեք ուսուցիչներին զրույցներ կազմակերպել Գորկու ստեղծագործության, նրա կյանքի և գործունեության մասին։



## I. Թ ՓԱՌ ՇՐՋ Կ ԱԼԵՔՍԵՅԸ

— Լեքսե՛յ Մաքսիմիչ, հրամանատարներ ենք՝ առանց զինվորների, — կատակի ասեց Ալեքսեյի ընկերը։ Ի՞նչ կա այստեղ։ Գնանք ծովի վրա. հը՞…

Գնացին Վոլգայով, առաջ գնացին մարդատար շոգենավով, ապա բեռնակիրով, նավաստիների հետ։ Յոթ օրից հետո արդեն նրանք Կասպից ծովի մատերքումն էին, ձկնորսների մի փոքր արտելում։

Ինչ որ աշխատում էին, այն էլ ուտում էին, իսկ մինչ այդ, ցուրտը վրա չէր հասնում։

Ընկերներից բաժանվելով, Ալեքսեյն սկսեց առաջանալ դեպի հյուսիս։ Տեղ-տեղ փայտով էր գնում, տեղ-տեղ գնում էր ձմերուկ ծախողների սայլերով։

Դերբենդի կայարանում Ալեքսեյի բախտը բացվեց. նրան տվեցին գիշերային պահակի աշխատանք, բեռներ պարունակող բակում։ Նա պիտի հսկեր յերեկոյան ժամը վեցից մինչև առավոտյան ժամը վեցը, պահպաներ համար ապրանքները, բրեզենտները, շպալները և փայտը՝ տեղական բնակիչների հափշտակումներից։

Մի անգամ այնպես պատահեց, որ նա աշնանային մութ գիշերով պետք է հսկեր ալյուրի պարկերի մի մեծ կույտի։ Եղանակն սկսեց փոխվել։ Փչում էր ցուրտ քամի և թափվում էր հորդ անձրև։ Տափաստաններում գիշերն անթափանց է, ինչպես թանաք։

Հանկարծ քամին պոկեց ալյուրի պարկերի վրա ամրացված բրեզենտը։ Վոչինչ չէր կարելի անել, պետք էր բարձրանալ բեռի վրա և ծածկել պարկերը։ Յեվ ահա, յերբ Ալյոշան բարձրացավ բեռի վրա, քամին գլորեց նրան, խճճեց բրեզենտի մեջ և գցեց ներքև։ Նա այնքան ուժեղ կերպով դիպավ ռելսերին, որ գիտակցությունը կորցրեց։ Իսկ հետո, ամբողջ մեջքն այնպես էր ցավում, որ հազիվ էր կարողանում շունչ քաշել։ Վիրավորությունից հետո, առաջին շրջանում նա վոչինչ խոսել չէր կարող։ Միայն յերեք շաբաթ հետո սկսեց խոսել, այն էլ շշուկով։ Կարծում էր, որ ձայնը բոլորովին կորցրել է, բայց չորս ամիս անց սկսեց խոսել, բայց վոչ թե առաջվա նման, այլ ավելի բարձր ձայնով։

Խոսելը՝ կարող ես նաև չխոսել, բայց պահակությունն անել է պետք։ Փայտը ձեռքին շրջիր բեռների շուրջը։ Տափաստանից փչում է քամին, բերում է ձյան շեղջեր…

Իսկ յերբ Ալյոշան անքուն գիշերից հետո պահակատեղից ազատվում էր, կայարանապետի խոհարարուհին հարկադրում էր նրան լվացք կրել, փայտ ջարդել ու ածել, մաքրել պղնձե ամանները, վառել վառարանները, հանել ձյուները և անել դեռ ուրիշ շատ բաներ, վորոնք կլանում էին որվա կեսը, չթողնելով ժամանակ կարդալու կամ քնելու։

Ալյոշան սպասում էր գարնան։ Ձմռան գիշերներին, պահակության ժամանակ, շարունակ ավելի և ավելի բոցավառվում էր նրա մեջ մի ցանկություն,— տեսնել ամեն ինչ, տեսնել թե մարդիկ ի՞նչպես են ապրում, ի՞նչ ժողովուրդ է ապրում իր շուրջը։

Գրքերը նրան շարունակ պատմել էին ուժեղ և քաջ հերոսների մասին, իսկ կյանքում նա շարունակ տեսել էր կոպիտ անասունների։ Պետք է գիտենալ՝ ինչն է ճիշտ, ինչը՝ սուտ։

Հենց որ ձյունն սկսեց հալչել, Ալյոշան հեռացավ կայարանից և սկսեց թափառել Ռուսաստանի ճանապարհներով։ Անցավ Դոնը, Վոլգան, Ուկրայինան, յեղավ նաև իր հայրենի քաղաքում — Նիժնիում։

Հետևյալ գարնանն արդեն Ալյոշան Ուկրայինայով անցավ Բեսսարաբիա։ Ալյոշային վոչոք փող չէր տալիս, ուստի և նա հաճախ սովածանում էր։ Աշխատում էր՝ վորտեղ որ հանդիպեր։ Փող էր աշխատում — և առաջ։ Սպառվում էր ամբողջ պաշարը — նորից կանգ էր առնում աշխատելու։

Բեսսարաբիայում Ալյոշան յեղավ խաղող հավաքելու ժամանակը։ Աշխատանքը լավ էր, ժողովուրդը հրաշալի։

Մի անգամ, յերեկոյան, որվա աշխատանքից հետո, բոլորը յերգով ու ծիծաղով գնացին ծովափ։

Ալյոշան մնաց խաղողի թփերի խիտ ստվերների տակ։ Նրան մոտեցավ պառավ մոլդավուհի Իգներգին։

— Դու ինչո՞ւ չգնացիր նրանց հետ,— գլուխը կռացնելով հարցրեց նա։

Չուզեցի,— պատասխանեց Ալյոշան։

— Ու... Դուք, ռուսներդ ծերացած եք ծնվում։ Ուայլ մարդիկ եք։

Ծովի կողմից գալիս էին մարդիկ, ուժեղ և հնչուն ձայներ։

— Լսել ես դու արդյոք, թե ուրիշ վայրերում այսպես յերգեյին,— հարցրեց Իգներգին, գլուխը բարձրացնելով և անատամ բերանով ծիծաղելով։

— Չեմ լսել։ Ցերբեք չեմ լսել,— շշնջաց Ալյոշան հիացմունքով։

Ցեվ չես լսի։ Մենք սիրում ենք յերգել։ Մենք սիրում ենք ապրել։ Նայիր, մի՞թե ամբողջ օրը չեն հոգնել նրանք, ավելի յերգում են։ Արշալույսից մինչև վերջալույս աշխատել են, դուրս յեկավ լուսինը՝ և ահա՝ յերգում են... Ահա ինչպես պետք է ապրել։

Ալյոշան հիշում էր իր յերիտասարդությունը, ծանր, անտանելի կյանքը և ամբողջ հոգով նախանձում էր այդ տաք յերկրի ուրախ և ուժեղ մարդկանց։

Հետո, յերբ աշխատանքը վերջացավ և Ալյոշան նորից ճանապարհ ընկավ։ Անցնելով Բեսարաբիան, նա հասավ Դունայի գետին։

...Մի անգամ նա գիշերեց Սև ծովի ափին, գնչուների վրանների մոտ։ Ծովից փչում էր սառը քամին, որ բորբոքում էր խարույկը։ Դեպի ձախ՝ անսահման տափաստանը, դեպի աջ՝ անվերջ ծովը, իսկ խարույկի մոտ՝ հին գնչու Մակար Չուդրան։ Նա հրակում էր իր ցեղի ճանապարհն և խոսում էր Ալյոշայի հետ։ Այն, որ Ալյոշան յեկել էր հեռավոր Ռուսաստանից, բոլորովին չէր զարմացնում նրան։

— Այսպես, դու գնո՞ւմ ես,— ասում էր նա, դա լավ է... դու քեզ համար փառավոր ուղի ես ընտրել, բազե։ Այդպես էլ պետք է։ Շրջիր և դիտիր. դիտեցիր արդար — պառկիր մեռիր։ Ահա և ամբողջը։ Նայիր, յես ահա հիսուն տարեկան եմ և այնքան բան եմ տեսել, որ յեթե այդ բոլորը գրվի թղթի վրա, թուղթը հերիք չի անի։ Ասա տես, ո՞ր տեղ չեմ յեղել յես։ Այդպես պետք է ապրել։ Գնա, գնա,— ամեն ինչ դրանում է։

Ցեվ ծերունի գնչուն, անուղղելի թափառաշրջիկը, յերկար պատմում էր Ալյոշային զանազան պատմություններ, հարկադրելով նրան մինչև հիշել այն մասին, որ մարդ իր դարը պետք ապրի թռչունի պես ազատ։

Վերադարձի ճանապարհին, Ալյոշան չէր հեռանում ծովից։ Աշխատում էր ձկնորսների հետ, բայց եվ դժվարությամբ էր կարողանում փող աշխատել։ Ամբողջ ճանապարհին ափով թափառում էին բոսյակները։ Նրանց տալիս էին ամեն տեսակ աշխատանք, սակայն զզվում էին, տեսնելով նրանց անհանգիստ ընավորությունը։

Հանելով Օդեսա, Ալյոշան բոսյակների մի խմբի հետ, գրավվեց նավահանգստի նավերը բեռնավորելու գործով։ Նավերի չթմիների հնչյունները, բեռները բերող վագոնների աղմուկը, շոգենավերի սուլոցները, նավաստիների և բեռնակիրների աղմուկը — ամբողջը վերածվում էին աշխատանքային մի խլացուցիչ յերաժշտության։ Ցեվ այդ բոլորի մեջ Ալյոշան ընկավ մի մարդու, որի հետ վիճակված էր հետո բավական մոտիկ ծանոթանալու։



Մակար Չուդրա յեվ Ալյոշան

Նա հագել էր նոր ձեվի կապույտ և սեվ գլխարկ, ձեռքում ձեռնափայտ։ Ի՞նչ էր անում նա նավահանգստում, Ալյոշային անծանոթ էր։ Նա նույնիսկ անհասկանալի էր այնտեղ, նավահանգստում, շոգենավերի սուլոցի, չթմիների ձայների յեվ բանվորների աղմուկների միջեվ։ Բոլորը մաշված էին, հոգնաբեկ, բոլորը վազում էին փոշու միջով, աղմկում էին, հայհոյում, իսկ այդ կերպարանքը հենց այդտեղ, դանդաղ շրջում էր մեռելային — տխուր դեմքով, ամեն ինչի հանդեպ սառնասիրտ, ամեն ինչին օտար։

Ալյոշային դուր յեկավ անծանոթը, բայց իրեն, բոսյակի կացությամբ, բեռնակիրի փալասներով յեվ ածուխի փոշու մեջ կորած, դժվար էր խոսակցության հրավիրել այդպիսի մի փրանտ մարդու։

Ծանոթությունը կատարվեց անսպասելի։ Նրանից մի քիչ հեռու, հացի յեվ ձմերուկի հետ տեղավորվելով, Ալյոշան զարմանքով նկատեց, որ անծանոթն իրեն է նայում անթարթ, ագահությամբ նայելով նրա համեստ ճաշին։ Արագորեն չորս կողմը նայելով, Ալյոշան նրան կամացուկ հարցրեց.

— Ուտել ուզո՞ւմ եք։

Նա ցնցվեց, բաց արեց սպիտակ ատամները յեվ նույնպես սիրով կակազելով նայեց։ Այն ժամանակ Ալյոշան յերկարացրեց նրան կես ձմերուկ յեվ մի կտոր հաց։ Նա հափշտակեց այդ յեվ անհետացավ ապրանքների կույտերի յետեվում։ Ցերբեմն այդ տեղից յերեվում էր նրա գլուխը, ծոծրակի վրա թեքված գլխարկով։ Նրա դեմքը փայլում էր լայն ժպիտից՝ յեվ նա, չգիտես ինչու, նայում էր Ալյոշային, վոչ մի վայրկյան չդադարելով ծամելուց։

— Շնորհակալ, շատ շնորհակալ. . նա խոսեց Ալյո-

չայի միջին, ապա բռնեց նրա ձեռքը, սեղմեց յեվ նույնպես սկսեց ցնցել։ Հինգ րոպե անց, նա արդեն պատմում էր Այլոշային իր մասին։

Նա Վրացի էր,—կնյազ Շաքրո Պթաձե, Կովկասի մի հարուստ կալվածատիրոջ վորդի։ Նա ծառայել էր Անդրկովկասի յերկաթուղային գրասենյակներից մեկում։ Ընկերը, վորի հետ միասին նա ապրում էր, անհետացել էր, կողոպտելով նրան։ Շաքրոն ընկել էր նրա յետեվից։ Իմանալով, վոր նա Բաթում է գնացել, Շաքրոն յեվս ուղեվորվել էր այնտեղ։ Բայց Բաթումում պարզվեց, վոր ընկերը գնացել էր Ոդեսա։ Շաքրոն վերցրել էր տոմար անցագիր յեվ նույնպես յեկել էր Ոդեսա։ Ընկերոջը նա չէր գտել, ամբողջ ունեցած փողը կերել էր յեվ հիմա արդեն յերկրորդ որն էր, վոր վոչ մի կտոր հաց չէր կերել։

Դրությունը բարդացավ։ Այլոշան վորոշեց, վոր կաշխատի, մինչեվ վոր նրա համար գնի մի տոմս մինչեվ Բաթում։ Բայց ախ՜ը... Բանից դուրս յեկավ, վոր դա շատ շուտով գլուխ բերել չէր կարելի, վորովհետեվ Շաքրոն ուտում էր յերեք մարդից ավելի շատ։ Որական ութսուն կոպեկ աշխատավարձից նրանք յերկուսով ուտում էին վաթսուն կոպեկը։ Միյեվնույն ժամանակ պետք էր նաեվ մտածել մոտեցող ձմեռվա մասին։ Ոդեսայում մնալն այլեվս անհնար էր նրանց համար։ Այն ժամանակ Այլոշան կնյազ Շաքրոյին առաջարկեց վոտքով գնալ, յեվ հետեվյալ պայմաններով. յեթե Այլոշան նրա համար չգտավ ուղեկից մինչեվ Թիֆլիս, ապա ինքը կուղեկցի նրան, իսկ յեթե գտավ՝ ինքը կը գնա իր ճանապարհով։

Յեվ ահա, յերկու ճանապարհորդներն Ոդեսայից ուղեվորվեցին Թիֆլիս։

## 2. ՅԵՐԿՈՒ ՀԱԶԱՐ ՎԵՐՍՏ

Ոդեսայից նրանք գնացին Նիկոլայեվ։ Աշխատանք չկար։ Գնացին Խերսոն։ Յերբ Այլոշան վերադառնում էր իր ուղեկցին, նա շատ ուրախ էր լինում յեվ շատախոսում էր, առանց լռելու։ Վերջանում էին փողերը՝ յեվ Շաքրոն ընկնում էր թախծության մեջ։ Այժմ նրա բոլոր պատմությունները այն մասին էին, թե ինչպես էր նա ուտում Կովկասում։ Բանից դուրս յեկավ, վոր նա նախաճաշին՝ ժամը տասնյերկուսին՝ ուտելով մի «փոքրիկ գառ» յեվ խմելով յերեք շիշ գինի, ժամը յերկուսին կարող էր առանց վորյեվէ դժվարության ուտել յերեք ափսե «չախոխբիլի» կամ «չիխիրթմա», մի ամբողջ փլավ, մի շամփուր խորոված, «ինչքան ուզես սալմա» յեվ դեռ ուրիշ շատ կովկասյան խորտիկներ. յեվ միյեվնույն ժամանակ խմում էր այնքան գինի, «ինչքան ուզեր»։ Նա պատմում էր վառվող աչքերով, ատամները կրճտացնելով յեվ թուքը կուլ տալով։

Յերբ Այլոշան կարողանում էր վորյեվէ բան աշխատել յեվ կիսել ընկերոջ հետ, Շաքրոն շատ գոհ էր լինում։ Կնյազը ասում էր, վոր ինքը նույնպես կսկսի աշխատել, յեվ վոր, փող կաշխատեն ու ծովով կը գնան Բաթում։ Բաթումում նա շատ ծանոթներ ունի, վորոնք անմիջապես կգտնեն Այլոշայի համար ծառայի կամ դռնապանի պաշտոն։

Նրանից վերջացան բոլոր փողերը յեվ վոչ մի տեղից փող ճարել չէր լինում։ Պետք էր գնալ Թեոդոսիա, վորտեղ այդ ժամանակ սկսել էին նավահանգստի կառուցումները։

Բայց ահա ճամբորդները գնացին Պերեկոպ, Սիմֆերոպոլ յեվ ուղեվորվեցին դեպի Յալթա։ Այլոշան գնում էր ծովից շլացած այդ մի կտոր հողի առջեվ լուռ հիացած։



Ծանոթությունը կատարվեց անսպասելի

Մի անգամ, Յալթայի մոտերքում, Այլոշան գործի անցավ, կտրատած ճյուղերից մաքրելու մի մրգի այգի յեվ, փողն առնելով, գնեց հիսուն կոպեկի հաց յեվ միս։ Յերբ նա իր գնածը բերեց ընկերոջը, այգեպանը կանչեց Այլոշային յեվ նա գնաց, թողնելով իր գնածները Շաքրոյի մոտ, վորը հրաժարվում էր աշխատելուց. պատճառաբանելով գլխացավը։

Մի ժամից հետո վերադառնալով, Այլոշան համոզվեց, վոր Շաքրոն, խոսելով իր ախորժակի մասին, ասել էր ճշմարտությունը. գնածներից չէր մնացել նույնիսկ փշրանքը։ Դա ընկերական վերաբերմունք չէր, բայց Այլոշան ձայն չհանեց, յեվ իզուր, ինչպես յերեվաց հետագայում։ Շաքրոն տեսնելով ընկերոջ լռությունը, նրանից ոգտվում էր իր ուզածի պես։ Այդ որվանից սկսվեց ինչ վոր անհաճո բան։ Մեկն աշխատում էր, իսկ մյուսը, զանազան պատճառաբանություններով, հրաժարվում էր աշխատելուց, ուտում էր, խմում յեվ քնում։ Այլոշային ծիծաղ յեվ ցավ էր պատճառում այդ առողջ ջահելի վրա նայելը։

Կնյազը սովորել էր մուրացկանություն անել։ Յեվ նա սկսում էր մուրալ։ Յերբ նրանք պետք է անցնեյին թաթարական գյուղերով, Շաքրոն սկսում էր մուրալու նախապատրաստություն տեսնել։ Դրա համար նա հենվում էր ձեռնափայտի վրա յեվ վոտքը քարշ էր տալիս գետնով, իբրեվ թե ցա-

վում ե։ Նա գիտեր, որ թաթարները ողորմություն չեն տա առողջ յերիտասարդին։ Ալյոշան վիճում եր եր նրա հետ, ապացուցելով որ, ամոթ ե այդպիսի բանով զբաղվելը։

— Յես չեմ կարող աշխատել,— կարճ պատասխանում եր Ծարրոն։

Ծարրոն սկսել եր շտապեցնել Ալյոշային, որ դուրս գան Ղրիմից, վորովհետեվ արդեն աշուն ե յեվ դեռ շատ ճանապարհ ունեն անցնելու։

Ալյոշան համաձայնվեց նրա հետ։ Յեվ նրանք գնացին Թեոդոսիա՝ փող աշխատելու։ Գնում եյին ծովափով։

Կերչ գնալիս, արդեն նրանք ճանապարհը շարունակեցին վոչ թե ծովափով, այլ տափաստաններով, ճանապարհը կարճացնելու համար։

. . . . . . . . . . . . . . . . . . . . . . .

## 3. ԱՌԱՋԻՆ ՊԱՏՄՎԱԾՔԸ

...Դիմացը Կովկասն եր։

Վորքան մոտենում եյին Թիֆլիսին, այնքան Ծարրոն դառնում եր սառը յեվ անհյուրընկալ։ Որ որի վրա նա դառնում եր ավելի յեվ ավելի մռայլ յեվ Ալյոշայի վրա նայում եր տարօրինակ կերպով։ Մի անգամ, սակայն, յերբ նրանք անցան Դարյալի կիրճը, նա սկսեց խոսել։

— Յերկու որ կանցնի—Թիֆլիս կհասնենք։ Կգնամ տուն։—Ո՞ւր եյիր։ ճանապարհորդում եյի։ Բաղնիք կգնամ... անա։ Կասեմ հորս—ներիր ինձ։ Մի քիչ կուտեմ... Կասեմ մորս—շատ ուզում եմ ուտել։ Յես շատ վշտեր եմ տեսել, ամեն տեսակի կյանք... բարեկամներս շա՜տ լավ մարդիկ են։ Քեզ հանդիպելիս միշտ մանեթանոց կտամ, դուքան կտանեմ, կասեմ՝ խմիր գինի, յես ինքս ել եմ բոսյակ յեղել։ Հորս կասեմ քու մասին—անա մի մարդ, վորն յեղել ե ինձ համար վորպես մեծ յեղբայր... Սովորեցրել ե ինձ.. Կերակրել ե։ Հիմի, կասեմ, դրա փոխարեն դու նրան կերակրիր։ Մի տարի կերակրիր.—անա թե ինչքան լավն ես, Ալեքսեյ։

Ալյոշան սիրում եր, յերբ նա խոսում եր։ Այդ ժամանակ նա վերածվում եր ինչ վոր մանկական պարզության։ Այդ ճառերն ավելի հետաքրքիր եյին դառնում, վորովհետեվ Թիֆլիսում նա չուներ վոչ մի ծանոթ մարդ, խոկ ձմեռը մոտենում եր։ Ալյոշան հույս ուներ Ծարրոյի վրա։

Գնում եյին արագ։ Անա Մցխեթը։ Վաղը՝ Թիֆլիս։

...Մնացել եր հինգ վերստ։

Հանկարծ Ծարրոն խոսեց.

— Դու կարծում ես, յես, վրացի ազնվականս, իմ քաղաքը կգնամ ցերեկո՞վ, այսպես պատառոտված, ցեխոտվա՞ծ։ Չե—յեվ... մենք կսպասենք յերեկոյին։ Կաց։

Նստեցին ինչ վոր դատարկ շենքի պատի տակ յեվ, փաթաթելով վերջին ծխախոտները, ցրտից դողալով, սկսեցին ծխել։ Ռազմավրական ճանապարհից փչում եր սուր յեվ ցուրտ քամի։ Ծարրոն նստել եր յեվ ատամների արանքից յերգում եր ինչ վոր տխուր յերգ։ Ալյոշան մտածում եր տաք սենյակի յեվ ուրիշ նման բաների մասին։

— Գնանք,— ասաց Ծարրոն, վճռական դեմքով, տեղից բարձրանալով։

Մթնել եր։

Լսիր,— ասաց Ծարրոն,— դու տուր ինձ այդ բաշլուղը, վորպեսզի յես դեմքս ծածկեմ, ապա թե վոչ ծանոթներս կարող են ինձ ճանաչել։

Ալյոշան տվեց բաշլուղը։ Ընկերները գնում եյին Ոլգինյան փողոցով։

— Ալեքսեյ, տեսնո՞ւմ ես ձիաքարշի կայարանը, Վերայի կամուրջը։ Նստիր այստեղ, սպասիր։ Խնդրեմ, սպասիր։ Յես կմտնեմ մի տուն, կհարցնեմ ընկերոջս մերոնց մասին, հորս, մորս...

— Շուտ արա։

— Այս րոպեյիս։ Մի րոպե...

Նա արագ թեքվեց դեպի ինչ վոր մութ յեվ նեղ նրբանցք յեվ անհետացավ ընդմիշտ։

Ալյոշան այլեվս յերբեք չհանդիպեց այդ մարդուն, վորն յեղել եր իր ուղեկիցը համարյա չորս ամիս։

Ալյոշան բավական տարեկան եր։ Նա շատ գրքեր եր կարդացել, շատ մարդկանց տեսել, բայց նրա հանդիպումը Ծարրոյի հետ՝ ամենանշանակալիցն եր։ Նա սովորեցրեց Ալյոշային շատ բան, ինչ վոր չկա գրքերում։

Մենակ մնալով սառը քաղաքում, Ալյոշան ապրում եր, ինչպես կարող եր։ Բեռներ եր կրում, աշխատում եր յերկաթուղու վրա։ Նրա համար ավելի վատ որեր կգային, յեթե չհանդիպեր Ալեքսանդր Կալյուժնուն, վորը հեղափոխական եր, յեղել եր բանտում յեվ աքսորվել եր Կովկաս յեվ այժմ ծառայում եր յերկաթուղային վարչության մեջ։ Ժամանակ ավելի յեվ ավելի հաճախ եյին կանգ առնում նրա աչքերը ջահել բանվորի վրա։ Կալյուժնին մի որ նրան առաջարկեց այցելել իրեն, յեվ անա, Ալյոշան, յերկար գիշերներով, պատմում եր նրան իր արկածները։ Կալյուժնին լսում եր նրան։ Իսկ յերբ Ալյոշան պատմեց նրան գնչուների հետ իր հանդիպման մասին Դունայի ափին, Կալյուժնին վեր կացավ յեվ տարավ նրան մյուս սենյակը։ Հրելով նրան այնտեղ, նա փակեց դուռը նրա վրա։

— Այնտեղ, սեղանի վրա թուղթ կա,— ասաց նա, զարմացած Ալյոշային, դռան ճեղքից։ Գրեցեք այնտեղ, ինչ վոր ինձ պատմեցիք։ Իսկ քանի դեռ չեք գրել, յես ձեզ բաց չեմ թողնի։

Ալյոշան դժվարանում եր, բայց Կալյուժնին նույնիսկ լսել չեր ուզում, մինչեվ վոր պատմվածքը պատրաստ չեղավ։

Հետեվյալ որն Ալյոշան գնաց Թիֆլիսի «Կովկաս» լրագրի խմբագրատուն։ Նրա առջեվ, սեղանի յետեվում, նստել եր խմբագիրը, մի լայն ծերունի, վոսկե ակնոցներով։ Նա ուշադրությամբ կարդում եր «Մակար Չուդրա» պատմվածքը։

— Այսպես...—ասաց խմբագիրը, ընթերցումը վերջացնելով յեվ զարմացած նայելով հեղինակին։— Այսպես,—կրկնեց նա մտածկոտ։— Այնուամենայնիվ այստեղ ստորագրություն չկա։ Պետք ե ստորագրել։ Ի՞նչպես ստորագրել։ Ո՞վ եք դուք։

Ո՞վ ե նա։ Ալյոշան մտածեց, ուզեց ինչ վոր բան ասել, ապա տատանվեց, յեվ վերջապես, ձեռքը թափահարելով, վճռական տոնով ասաց.

—Լավ։ Ստորագրեցեք այսպես.—Գորկի (դառն)։

**Մաքսիմ Գորկի։**

Խմբագիրը գրեց։ Հետո ձեռագրի վերեվի ձախ անկյունում գրեց.—«Տպել»։



ՄԿՐՏԻՉ ԱՐՄԵՆ

# ՁՄԵՌ

*Վառ են թափված փաթիլները,*
*ու սառել են կաթիլները*
*ջրհորդաների.*
*Ձյունն ամեն ինչ սավանում է,*
*պաշտած հողը լավանում է,*
*պահում է բերքի:*

*Թույլ է տաքը վերևից էլ,*
*հուր չի թափվում արևից էլ,*
*ամպեր շարունակ.*
*ծուխ են հորդում ծխահանները,*
*կարմրափողկապ տղաները*
*խաղում են սահնակ:*

*Գետը արդեն սառուցվել է,*
*գետի վրա կառուցվել է*
*սառույցե կեղև.*
*չմուշկ հագած պատանիները*
*արդեն շարժում են ոտները,*
*սահում են վերև:*

*Այգիները սպիտակել են,*
*այգեպաններ փակել են*
*խուցերն այնտեղի.*
*Ձյունը այնքան շատ ընկել է,*
*հաստ կեղևով նա փակել է*
*տերևներ դեղին:*

*Ձյունածածկ են քաղաքները,*
*ձյունածածկ են փոքր գյուղերը,*
*նաև ամեն ինչ.*
*կարծես կյանքը ննջացել է,*
*արդեն հիմա գինջացել է*
*ու քաշում է նինջ:*

*Կարծես ամեն ինչ քնում է,*
*նոր ուժերով նա մնում է*
*շուրջը, ամենքին.*
*նոր ուժերը խլրտում են,*
*ամբողջ յերկրով պատվում են,*
*սպասում գարունքին:*

---

ԶԱՐԱՏՈՎ

# ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՄԱՍԻՆ

Լրացավ Կարմիր բանակի գոյության տասը տարին։ Ինչպես է կազմակերպվել մեր բանակը։ Ինչու բոլոր աշխատավորները չեն մոռանում այն հերոսական պայքարը, վորը նա մղել է։ Ինչու ենք սիրում ու պաշտպանում Կարմիր բանակը։

Այս բոլոր հարցերին պիտի կարողանա պատասխանել յուրաքանչյուր պիոներ։

Յեկեք պատասխանենք։

## ԻՆՉՈՒ ԲՈՒՐԺՈՒԱՆԵՐՆ ՈՒ ԿԱԼՎԱԾԱՏԵՐԵՐԸ ԹՇՆԱՄԻ ՅԵՆ ԽՈՐՀՈՒՐԴՆԵՐԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆԸ

Խորհրդային իշխանությունը կալվածատերերից, թագավորից ու վանքերից մոտավորապես 110 միլիոն հեկտար հող խլեց։ Այդ հողը ներկայումս ոգտագործում են գյուղացիները։ Գործարանատերերից խլել ենք 18 հազար գործարան։ **100 միլիոն գյուղացիներ, 2 միլիոն ու կես բանվորներ ազատվել են իրենց շահագործողների լծից։ Խորհրդային Ռուսաստանը հրաժարվեց մասնակցել իմպերիալիստական պատերազմին**, վորն ոգուտ եր բերում գործարանատերերին, բանկիրներին և քայքայում բանվորներին ու գյուղացիներին։

Կարող եյին նրանք, վորոնք կորցրին այնքան հարստություն և իշխանություն միլիոնավոր աշխատավորների վրա, հաշտվել այդ հանգամանքի հետ։

Ի հարկե վոչ։ Վոչ մի գործարանատեր կամ կալվածատեր հոժարությամբ չի զիջի իր գործարանն ու հողը բանվորին ու գյուղացուն։ Յեվ այն ժամանակ, 1917 թվին, բուրժուազիան պայքար սկսեց հեղափոխության և խորհրդային իշխանության դեմ։

Նրան ոգնության յեկավ ատարյերկրյա բուրժուազիան, վորովհետև նա շատ յեկամուտներ ուներ Ռուսաստանում և՝ բացի այդ՝ վախենում եր այն բանից, վոր Ռուսաստանի աշխատավորների որինակին կը հետևեն նաև իրենց յերկրի բանվորներն



ԸՆԿ. Կ. ՎՈՐՈՇԻԼՈՎ

ու գյուղացիները։ Անա ինչու հարձակվեցին խորհրդային հանրապետության վրա, անա ինչու մենք կռիվ մղեցինք հայրենի և ատարյերկրյա բուրժուազիայի դեմ։

## ԴՐԱ ՀԱՄԱՐ ՄԵԶ ՀԱՐԿԱՎՈՐ ԵՐ ԲԱՆԱԿ

Ցարական գեներալները բռնի կերպով հավաքեցին գյուղացիներին և կուլակների, նախկին սպաների, հեղափոխության բոլոր թշնամիների մասնակցությամբ կազմեցին մի քանի հարյուր հազար մարդուց բաղկացած բանակ։ Նրանց միացան 18 իմպերիալիստական պետությունների զորքերը։ **Յեվ մենք էլ ստեղծեցինք մեր բանակը։**

**Կարմիր բանակը կազմակերպվեց խորհրդային իշխանության դեկրետի համաձայն՝ 1918 թվի փետրվարի 23-ին։ Արդեն այդ ժամանակ վաղուց եր կռիվն սկսվել հեղափոխության ու հակահեղափոխության միջև։** Յերբ Կարմիր բանակը դեռ չեր կազմակերպվել, հեղափոխության թշնամիների դեմ պայքարը տարվում եր բանվորների զինված խմբերի (կարմիր գվարդիա) միջոցով։ **Նրանց միացել եյին նախկին ցարական բանակի զինվորները, գյուղացիները, նավաստիների կամավորական ջոկատները։**

## ՎՈՐՏԵՂ ՅԵՎ ՈՒՄ ԴԵՄ ԵՐ ԿՌՎՈՒՄ ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԸ

Հակահեղափոխականները շրջապատել եյին մեր հանրապետությունն իրենց զորքերի ողակով։ Առաջ եյին խաղում բոլոր կողմերից, աշխատում եյին մեր հանրապետության կենտրոնական մասը կտրել ծայրամասերից, վորպեսզի նա զրկվեր հացից, նավթից, ածուխից, վորպեսզի կանգ առներ վողջ կյանքը, վորպեսզի մենք ստիպված լինեյինք անձնատուր լինել։

**Կարմիր բանակը կռվում եր հյուսիսում՝ Արխանգելսկի նահանգում, հարավում՝ Սև ծովի, Կովկասի յեվ Ղրիմի կողմերում, արևելքից՝ թշնամիները առաջանում եյին Սիբիրից դեպի Վոլգայի ափերը, արևմուտքից՝ առաջանում եյին Ֆինլանդիայից, Եստոնիայից, Լատվիայից, Լիտվայից, Լեհաստանից, Ռումինիայից։**

Սկսվեց նրանով, վոր գերմանացիները շարժվեցին Ուկրայինայի վրա։ Մուրման թերակղզում և Արխանգելսկում անգլիական իմպերիալիստները զորք հանեցին։ Վոլգայում բռնկվեց չեխո-սլովակների ապստամբությունը։ Յեվ հետո՝ Սիբիրից շարժվեց Կոլչակը։ Այս բոլորի դեմ կռիվ եր մղում Կարմիր բանակը, յերբ հարավային Ռուսաստանում կազմակերպվեց Դենիկինի բանակը, նրան ոգնում եյին անգլիական, ֆրանսիական և ամերիկյան իմպերիալիստները։ Դենիկինը հասավ մինչև Տուլա քաղաքը — Մոսկվայի մոտ։

Մեր բանակը Դենիկինին ջարդ ու փշուր եր արել, յերբ վերսկսվեց Կոլչակի առաջխաղացումը։ Կոլչակին ջարդեցինք, մեզ վրա հարձակվեցին լեհական կալվածատերերն ու բուրժուաները՝ ֆրանսիական իմպերիալիստներից ոգնություն ստանալով։ Միաժամանակ Ղրիմից գեներալ Վր-

բանակը մեզ հանգիստ չէր տալիս. իսկ դրանից առաջ անգլիացիների և ֆրանսիացիների օգնությամբ Յուդենիչն էր արշավում Պետրոգրադի (այժմյան Լենինգրադի) վրա։

Բայց այդ՝ սպիտակ գվարդիական բանակներից մեր դեմ կռվում էին մանր ավազակային խմբերը — բանդաները։

Յերկրի ամբողջ աշխատավորության օգնությամբ մեր Կարմիր բանակը փշրեց հակահեղափոխական ուժերը և հաղթանակով դուրս յեկավ քաղաքացիական կռիվներից։

### ԻՆՉՈ՞Ւ ՄԵՆՔ ՀԱՂԹԵՑԻՆՔ

**Կարմիր բանակը հաղթեց ամենից առաջ այն պատճառով, որ նրան ղեկավարում էր բանվոր դասակարգի բոլշևիկյան կուսակցությունը։ Մեր կուսակցությունը սովորեցրեց աշխատավորներին՝ ինչպես հարկավոր է կռվել սպիտակների դեմ, կազմակերպեց Կարմիր բանակ յեվ ինքն էր կռվում նրա առաջին շարքերում: 300 հազար կոմունիստներ կռվում էին Կարմիր բանակայինների հետ կողք կողքի, կռվի առաջին դիրքերում։**

Կարմիր բանակը հաղթեց և այն պատճառով, վոր **բանվորները յեվ գյուղացիները մի կուռ միություն էին կազմել:** Գյուղացիները գնում էին բանվորների հետ և ամեն կերպ **օգնում էին Կարմիր բանակին։**

Կարմիր բանակը գիտեր, **թե ինչի համար է ինքը կռվում** և վորոշել էր՝ ինչ էլ վոր լինի՝ հաղթել։ Կարմիր բանակի շարքերում տիրում էր խիստ հեղափոխական կարգապահություն. հեղափոխության թշնամիների դեմ կռիվ մղելով, միաժամանակ սովորում էր ռազմական գործը, և կարճ ժամանակում Կարմիր բանակը դարձավ աշխատավորների կազմակերպված զինված ուժը։

**Կարմիր բանակի հաղթանակին շատ օգնեցին նայեվ արտասահմանի բանվորները։** Նրանք հաճախ թույլ չէին տալիս, վոր հակահեղափոխականների համար զենք ու ռազմամթերք տեղափոխեն, կոչ էին անում իրենց զինվորներին՝ չկռվել Կարմիր բանակի դեմ, և հաճախ յեղել են դեպքեր, յերբ ոտարյերկրյա զինվորները և նավաստիները հրաժարվել են կռվել Կարմիր բանակի դեմ։

**Լենինի կուսակցության ղեկավարությունը, բանվորների և գյուղացիների դաշինքը յեվ նրանց միությունը արտասահմանի աշխատավորների հետ — ահա ինչու մենք հաղթեցինք քաղաքացիական պատերազմի ժամանակ:**

**Խորհրդային իշխանությունը հաղթեց։** Բանվորները և գյուղացիները պահպանեցին իրենց իշխանությունը մեր յերկրում։ Ներկայումս էլ մեր ԽՍՀՄ-ին պաշտպանում է Կարմիր բանակը բոլոր տեսակի իմպերիալիստներից։

Մենք տոնում ենք Կարմիր բանակի տասնամյակը և ուրախանում, վոր ունենք խորհուրդների հանրապետության համար արթուն պահակ, և վոր այդ պահակն ստեղծել են իրենք՝ բանվորներն ու գյուղացիները՝ բոլշևիկյան—Լենինի կուսակցության ղեկավարությամբ:

---

# ԾԱԳՈՂ ԱՐԵՎԻ ՃԱՃԱՆՉՆԵՐԻ ՏԱԿ

Ցարիցինի, Պերեկոպի, Տուլայի, Կրիվոյ-Ռոգի և ածխային թանձր փոշու մեջ կորած փոքրիկ Գորլովկայի հաղթական կռիվների պատմությունը, դա այն պատմությունն է, վոր ստեղծվել է հազարավոր անանուն հերոսների կյանքի գնով. նրանք պայքարել են հերոսաբար և ընկել փառավոր մահով, հողի ամեն կտորը ձեռք է բերված այդ հերոսների ամենամեծ զոհաբերությամբ։

Դեռ չի գրված այդ հերոսական պատմությունը։ Շատ հերոսներ, վորոնք ածխահորերի գրավման համար մղված պայքարում իրենց կյանքն են զոհել, — զոհել են հանուն դասակարգի շահերի, հանուն կարմիր դրոշակի հաղթանակի, — մոռացվել են արդեն. սակայն նրանք չեն մոռացվել այն ընկերների սրտերում, վորոնք տեսել, զգացել և ապրել են այդ հերոսական պայքարը, կողք-կողքի կռվել են թշնամու դեմ և լսել են մեռնող ընկերների վերջին ձայնը, վերջին ցանկությունը։

Յեվ հիմա, յերբ տոնում ենք փառավոր Կարմիր բանակի տասնամյակը, յերբ մենք խոնարհում ենք մեր գլուխները բոլոր հերոս ընկերների շիրիմների առաջ, ընկերների, վորոնք պայքարել են խիզախորեն և պատվով ընկել են հերոսական այդ պայքարում, յես ուզում եմ պատմել ձեզ տասնյոթ տարեկան Վալոդյա Լուսինսկու մասին, վորն այնքան հերոսաբար ու աննկուն կերպով առաջ էր գնում անգլիական հրացանների գնդակների տարափի տակ։

..Գորլովկա կայարանում, վորտեղ յերկու ճանապարհների յերկաթուղիները հանգույց են կազմում իրար հետ, սոսկալի բքի, սառնամանիքի մեջ, ձյուներում կոլոլված գեներալ Ձերեպովի վերջին զորամասերը թափում էին իրենց զենքերը, լցվում էին ձյուների մեջ թաղված վագոնները։

Գորլովկայի բարձունքները գրաված բանվորների գնդակների տարափից սարսափած գեներալ Ձերեպովը, բարձրանալով շոգեշարժի վրա, հրամայեց «լ ր ի վ ը ն թ ա ց ք»։

Նա ինչ իմանար, վոր սպիտակների թիկուն-

քում, համարձակ ու վճռական շարժումներով, գործում է Վալոդյա Լուպնեվը։ Ձյունախառն բուքի ահեղ հոսանքը և պահակային փոքրիկ խարխուլ տնակը խանգարեցին գեներալ Ձերեպովին տեսնելու, վոր կայարանից մի վերստ



Վալոդյան փոխում է յերկաթուղու սլաքները

հեռու, սեմաֆորի մոտ, յերկաթուղիների սլաքները փոխեց Վալոդյա Լուպնեվը ու պահվեց պահակային փոքրիկ տնակում։ Յեվ սպիտակներով լի յերեք գնացքները, «լրիվ ընթացքով», կարմիրների գնդակների տարափի տակ, թողին կայարանը և սեմաֆորի ու պահակային տնակի մոտ ընկան փակուղու մեջ։

Խարխուլ շոգեշարժ «III 2138»-ը, վորով գեներալ Ձերեպովն էր գնում, ուժգնորեն դիպավ փակուղու յերկաթե հաստ բալկաներին և փշրվեց։ Բարձրացավ վայրենի աղմուկ, աղաղակ, հրացանների ու գնդացիրների ուժեղ վորոտ և խուլ «ուռա՛ա», — այդ Վալոդյա Լուպնեվի պատանեկական ձայնի հնչյուններն էին, վոր նրա հաղթական հերոսության «ուռռա»ն էին թնդացնում կայարանից 1 վերստ հեռու, պահակային խարխուլ փոքրիկ տնակի մոտ։

Կարմիրները գրոհի դիմեցին։ Տեղի ունեցավ կարճատև կրակոց ու բռնցքամարտ։ Վալոդյա Լուպնեվը գերի ընկավ, սակայն գեներալ Ձերեպովի զորամասերը, թողնելով ռազմամթերքով, հագուստով ու պաշարով լի վագոնները, փախան զինված բանվորների գնդակների անձրևի տակ, տալով բազմաթիվ գերիներ զինված բանվորներին, վորոնք մի քանի օրվա ընթացքում մի շարք կայարաններ գրավեցին։

Սպիտակները գերի վերցրած վագոններ ու հերոս պատանուն տարան իրենց հետ Վալնովախա կայարանը, վորտեղից նրանք շարժվում էին դեպի Ղրիմ, Պերեկոպ, ամեն տեղ, ամեն կայարանում թողնելով բազմաթիվ վագոններ, վորոնք գրեթե բոլորն էլ լիքն էին լինում զենքերով և անգլիական շինելներով։

Զինված բանվորների գնդակների արճիճե անձրևի տակ փախչում էին նրանք։

Յեվ ահա սառն ու բքաշունչ մի առավոտ, յերբ դեռ արևը թաղված էր մոխրագույն ամպերի յետևում, յերբ դեռ յերկու ժամ կար, վոր կարմիրները գրավեյին կայարանը, Վալոդյային մերկացրած դուրս բերին նրանք։ Վալոդյան հաղթական էր, խիզախ. նա քայլում էր անյերկյուղ ու վստահ քայլերով։

— Զգաստ, — վորոտաց հրամանատարի ձայնը, յերբ նա աչքերն արևելքին հառած, ժպիտով լի հայացքով վարդագունվող ամպերին էր նայում. և ահա գլուխը բարձր բռնած, աչքերը կարմրին տվող ամպերին հառած, հնչեց.

— Յելիր, ում կյանքը անիծվել է...

Սակայն ճարճատող հրացանների համազարկը խլացրեց նրա յերգը, և նա ընկավ, ծագող արևի ճաճանչների տակ։



Հրացանների համազարկը խլացրեց նրա յերգը

Հունվար ամիսն էր։ Սպիտակները, ջարդված ու հուսահատ, նահանջում էին։ Այրվում էին քաղաքներն ու գյուղերը. ձյունածածկ տափաստաններում սառչում էր տաք արյունը, ողնա-

վերը պտույտով սավառնում էին ածխահորերի վրայով, պայթում էին ռումբերը։

Հիմա չերկար տարիներ են անցել այն օրերից, և մենք վերհիշում ենք այդ մոռացված, անանուն հերոսներին, վորոնց սրտերում հեղափոխական կրակն էր վառվում, հեղափոխական արյունն էր հոսում, և վորոնք հաղթական ճակատով, գալիքի հույսերով լի իրենց աչքերը բացվող արշալույսին հառած, մահը գրկեցին և ընկան հերոսական մահով, ծագող արևի ճաճանչների տակ։

---

# ՁԵԿՈՒՅԱԳԻՐ

* * *

Գնում են լուռ, զգուշությամբ, ամբողջ ժամանակ զննելով չորս կողմը։ Գնում են գաղտնի ճամփաներով, անտառի վայրերով, ուղղությունը պահում են արևով ու աստղերով։

Թշնամու աչքը գայլի աչք է, աչքն առավ՝ էլ չես պրծնի։

Պարտիզանի առաջ են շարժվում վեց ստավրոպոլցի։ Նրանք չերրորդ գիշերն է, ինչ հեռացել են գնդից։

— Զգուշացեք.. թե վոր քնեցիք, կորած է ամբողջ գունդը,— ասել է նրանց գնդի հրամանատարը։

Յերրորդ գիշերն է, ինչ գնում են առանց ձիերից ցած իջնելու, առանց աչքները կպցնելու։ Վտանգ է թաքնըված յուրաքանչյուր թփի, յուրաքանչյուր կոճղի յետևում։

Դրանից առաջ յերկու ջոկատ էր ուղարկված դիվիզիան փնտրելու, բայց նրանք չվերադարձան։

Գունդն առաջապահ էր. նա կտրվել էր դիվիզիայի գլխավոր ուժերից և շրջապատված էր թշնամիներով։ Շտաբից ստացված վերջին հրամանն էր՝

— Նահանջել ..

Մի կերպ հաջողվեց շրջապատող թըշնամու ճանկերից ազատվել, բայց հիմա ով գիտեր, վոր կողմում է գըտնվում դիվիզիան։ Ուր էլ գնում էին, հանդիպում էին թշնամիներին։ Քաղցած և ուժասպառ յեղած յերկարատև յերթերով ու մարտերով, գունդը դեմ առավ անծայր ճահիճների։

Դիվիզիան փնտրելու համար, գնդի ծանր դրության մասին նրան իմացնելու համար ուղարկվող այս ջոկատին ընտրել էր ինքը, գնդի հրամանատարը։ Վեց հոգին էլ նրա յերկրացիներն էին, գերմանական ճակատում միասին էին կռվել։ Բարձրահասակ, ճկուն ու ճարպիկ, նրանք հիշեցնում էին լեռնցի իգիթներին։

Այդ յերրորդ ջոկատը գնդի վերջին ու միակ հույսն էր։

*

Մոտենում էր առավոտը։ Վարդագույն ժապավեններ էին ձգված յերկնակամարում։ Արդեն լուսանում էր։ Առջևում առանձնավոր պարիսպով ձըգված էր անտառը։

— Վարգով*) ...— ձայն տվեց առաջին ձիավորը։ Ձիերը քշեցին և մի քանի րոպեից հետո արդեն բոլորն էլ անտառումն էին։

Մտնելով անտառի խորքը, ջոկատը կանգ առավ մի փոքրիկ բացատում։ Հոգնած մարտիկները վար էին թափվում դեղնած, դեռևս ցողաթաթախ խոտի վրա, սաղարթավոր հսկա կաղնու տակ և նույն րոպեին քնում էին։

Ջոկատի ավագը,— Շիլոն,— բարձրահասակ ու նիհար, վորպես ուռենու ճյուղ մի յերիտասարդ էր։ Նա ջղայնորեն կրծոտում էր իր սև բեխը և խորաթափանց հայացք գցում գետի թփուտները։ Ճանապարհի մոտ նա ժամապահ էր թողել։

Տղաները քնած են. կարծես մշուշի միջից դիտում է Շիլոն բացատը, քընած ընկերներին, մոտերքում արածող ձիերին, ճանապարհն ու ժամապահին, վորը ծույլորեն ու ծանրաքայլ յետ ու առաջ է գնում։

Շիլոյի աչքերը ծանրացան, նա մի րոպե ննջեց։ Հանկարծ նա ցնցվեց, հիշեց մի ինչ-վոր բան և չորս կողմը նայելով, ձեռքը ծոցը տարավ։

Ծրարը,— ամենից թանկագին բանը, —իր հետ էր, այստեղ, ծոցում։ Ծրարը ձեռքն առած, Շիլոն մի ինչ-վոր բանի մասին լարված մտածում էր։ Աչքն ընկավ Վոլչոկի մաշված տրեխներին։ Ժպտաց։ Մոտ սողաց և արագ սկսեց արձակել քնած ընկերոջ աջ վոտքի տրեխն ու փաթաթանը։

* *

— Վեր. պոլ կրե *), վեր կոց...

Բացատը լի էր լեհերի կապտավուն զրահներով (շինելներով)։ Լեհերը խլել էին քնածների զենքը և կիտել կաղնու տակ։ Կարմիր բանակայինների ձեռքերն ամուր կապկպած էին պարաններով։

— Ու-ու-ու-ա,— գայլի վոռնոցով մռնչաց Շիլոն։ Նա ձգեց ձեռքերը, բայց շատ ամուր էին կապված և անզոր չարությամբ նա կրկին վար ընկավ։

— Քնով ենք անցկացել,— կամաց, կարծես մեկին հարցնելով ասաց Վոլչոկը։ Նայեց ժամապահի կողմը։ Նրա մարմինն ընկած էր ծառի տակ։ Մեջքին ցցված է սվինը, իսկ ալ-կարմիր արյան շիթը գլխից խոտի վրա էր հոսում։

Լեհական հրամանատարը վազում էր մի բանակայինից դեպի մյուսը և զննում.— Հանեք զրահները։

Նա մոտենում էր նրանց, խփում վոտքերով։

Բայց կարմիր բանակայինների վոտ ու ձեռքը կապկպած էին։ Նրանք վոչինչ չէին կարող հանել իրենց վրայից։ Նրանք հավաքվել էին իրար մոտ, կաղնու տակ։ Կատաղության առաջին րոպեներն անցել էին. այժմ նրանք հնազանդ էին և պատրաստ ամեն ինչի։

Մի քանի լեհ զինվորներ հարձակվեցին կարմիր բանակայինների վրա, հանեցին նրանց կոշիկները, գլխարկները, շալվարները։ Այնուհետև զինվորներն սկսեցին, կռվելով իրար հետ, բաժանել ավարը։ Մեկն արհամարհանքով բոթեց Վոլչոկի կողքը. վոչ վոք աչք չուներ նրա պատառոտված տրեխների վրա։

---

*) Վարգ—ձիու արագացրած քայլվածքն է։

*) «Պոլ կրև» լեհերեն նշանակում է՝ շան արյուն,— վիրավորանք է։

— Փրկված է,— անցավ Շիլոյի մըտքով, և նրա դեմքը փայլեց ներքին ուրախ մտքից։

Հինգ հոգուն էլ տարան նեղ կածանով։ Լեհ հրամանատարը մի կարճ հրաման տվեց յերիտասարդ սպային, ցույց տալով մոտիկ ծառերի ճյուղերը։ Դուրս յեկան ճանապարհի վրա։

— Մեր վերջը հասել է,— ծանր հառաչով ասաց Վոլչոկը։

Շիլոն հավասարվելով Վոլչոկին, առանց բերանը բացելու, ատամների արանքից ասաց.

— Սատապ... ծրարը փաթաթանների մեջն է... լսեցի՞ր...

Վոլչոկը ցնցվեց ու նույնպես կամաց պատասխանեց.

— Լսեցի։

Շիլոն շարունակեց շտապ և դարձյալ շատ կամաց.

— Ինձ նայիր... Ինչ վոր ես անեմ, արա նույնը դու։ Յեթե, բան է, ես կորչեմ... ազատվիր դու, փրկիր ծրարը...

Արագ լսեց. նրանց հասնում էր յետ ընկած լեհական սպան։ Յերիտասարդ սպան քայլում էր առջևից և դիտում կողքի ծառերը։

— Ճյուղեր է ընտրում սրիկան մեզ կախելու համար,— մտածեց Շիլոն և նրա կրծքից նորից դուրս ցատկեց վայրենի, գայլի վոռնոց։ Բայց այս անգամ նրա վոռնոցի մեջ չկար առաջվա ցավը, չկար հուսահատություն։ Վոչ։ Անզուսպ կատաղությունը նրան գրնդակի արագությամբ մղեց դեպի առջևից քայլող սպան։ Սպան խոխոցով վայր ընկավ, իսկ Շիլոն առաջ վազեց։

— Կաց...— կանչեց մոտիկից քայլող լեհը և հարվածեց թրով։ Արյունը ցայտեց Շիլոյի ուսից և ներկեց շապիկի ցնցոտիները։ Բայց Շիլոն վոչ մի ուշադրություն չդարձրեց վերքի վրա։ Լեհերի մեջ շփոթություն ընկավ։ Բոլորն էլ հրացաններով առաջ վազեցին։

— Կաց, կաց,— գոռում եյին նրանք և անկանոն կրակում փախչողի յետևից։

Վոլչոկն անսպասելիությունից շըփոթվեց, տեղում քարացավ և աչք չէր թեքում ճանապարհով փախչող Շիլոյից։ Հետո նա ցնցվեց, կարծես սթափվեց քնից։

— Տղերք, ծլկեք,— գոչեց նա ընկերներին և ուտրին գնդակի պես ցատկեց, դուրս թռավ յերկու վոտքով ճանապարհից և հասավ ծառերին ու թփերին։ Մյուս յերեքը հետևեցին նրա որինակին, փախչելով զանազան կողմերը։

Լեհերի կողմից ուժեղացան ճիչերը, հայհոյանքը, կրակոցները։ Յերկու անգամ Վոլչոկի գլխի վրայով վզվզացին գնդակները։

Վոտքերի տակ ճարճատում եյին չոր ճյուղերը։ Ծառերն ու թփերը չանկռտում եյին ու հարվածում դեմքը։ Սրտի բաբախումն ստիպեց մի րոպե կանգ առնել։

Կանգնեց, ականջ դրեց, նորից սկսեց փախչել... Մի փոքր վազեց՝ ծառերի յետևից լույս յերևաց։ Հրացաններն արդեն շատ հեռվում եյին կրակում։

Կողքը ծակեց։ Աչքերը մթնեցին։ Վայր ընկավ թաց հողի վրա։

* * *

Լուսաբացին կարմիր հետախույզները գտան Վոլչոկին անտառի ծայրում ուշագնաց դրությամբ։ Տարան դիվիզիայի շտաբը։

Շտաբում Վոլչոկն ուշքի յեկավ։ Պատմեց ամեն ինչ և դիվիզիայի հրամանատարին հանձնեց ծրարը։

«Ժամանակ մի կորցնեք։ Ոգնություն հասեք։ Ուժեր չկա, փամփուշտ չկա։ Մարտիկների տրամադրությունը վատ է։ Գտնվում ենք այսինչ տեղում...» Զեկուցագրին կըցված է շատ նկարած քարտեզը։

Մի ժամից հետո դիվիզիոն ոգնություն էր շտապում գնդին։ Ամբողջ որ ու գիշեր քայլում էր դիվիզիան։ Առավոտյան հանդիպեցին լեհերին։ Արևի տակ շողշողացին թրերը։ Յեվ կարմիր բանակայինները սուրբշով հարձակվեցին լեհերի վրա։

Յերեկոյան դեմ դիվիզիան պատռեց թշնամիների ճակատը և ճանապարհ բացեց դեպի ճահիճները, վորոնց մոտ գտնվում էր գունդը։

Կարմիր բանակայինները սլանում են ոգնության։ Քամին փրփռացնում է նրանց կարմիր դրոշները։

Յեվ առա հեռվից լսվեց ճահճի մոտից յեկող գնդի ուրախ, գիլ «ուռան»...

**Արբատով**

# ԿԱՐՄԻՐ ԶՈՐԱՆՈՑԻ ՈՐԸ

Յերբ ծայրը արևդակի առաջին ճառագայթները զորանոցի լուսամուտներից ներս թափանցեցին՝ լուսավորելով անկողինների յերկար շարքը, բոլորը դեռ քնած եյին։ Միայն սրապահներն եյին մերթ ընդ մերթ նայում ժամացույցին, վախենալով արթնացման ժամը մոռանալուց։

Ուղիղ ժամը 6-ին փչեցին շեփորները և զորանոցը կենդանացավ, ինչպես մի մեղվանոց։

Ուսուցումն սկսվում է ժամը 8-ին։ Բայց մինչև 8-ը հազար ու մի գործ կա անելու։ **Կարմիր բանակայինը կուլտուրական մարդ է։ Նա թե ինչ նա ջանասիրությամբ հավաքում է իր անկողինը, մաքրում իր սեղանի փոշին, մի լավ լվացվում, չմոռանալով լվանալ վիզը, ականջները յեվ ատամները։**

ԶՈՐԱՆՈՑԸ ՍՈՎՈՐՈՒՄ Է

Գնդացիրը շատ բարդ բան է։ Ապա փորձիր հավաքել այն, յերբ նա բաժանված է յիննում տասնյակ մասերի։ **Յեվ յուրաքանչյուր մասն այնպես պիտի գիտնաս, ինչպես քո հինգ մատները:** Նույնիսկ ավելին։ Դու պիտի իմանաս, թե ինչի համար է այդ մասը, ինչքան է կշռում, ինչ փոխհարաբերության մեջ է նա մյուս մասերի հետ և այլն։ Այլ կերպ չի կարելի։ Հակառակ դեպքում՝ չես կարող գործածել գնդացիրը։

Զորանոցի ամեն մի անկյունում խմբվել են կարմիր բանակայինները։ Մի տեղ ուսումնասիրում են ռումբը, մյուս տեղ՝ հրացանը, հրաձգային սենյակում նշանաձգությամբ են զբաղված։

Դրսից լսվում են կարմիր բանակային քայլերգի հնչյունները, և լուսամուտից տեսնում ես, թե ինչպես կուռ շարքերով անցնում են գումարտակները և վաշտերը։

Այստեղ «քաղժամը» է։ Նա ցույց է տալիս առաջին և յերկրորդ դասակների քաղուսուցման արդյունքները։



Ռազմական անկյուն

Պարապում են

Կարմիր բանակայինները հոգնած են։ Նրանք խմբակների չեն բաժանվել և վերհիշում են իրենց անցածը։

Ցերեկու ժամ սկսվում է «մարտը»։ «Կարմիրները» նեղել են «սպիտակներին»։ Նրանք թեև փորձեր եյին կատարում պաշտպանվելու համար, բայց ամեն ինչ վերջացած եր։

«Սպիտակների» շարքերն արդեն դողացին, յերբ արվեց նրանց այն հարցը, թե ինչ է կատարվում Չինաստանում։ Թուրիկ Աթայանը (որը պատասխանելու չեր այդ հարցին) այնպիսի մի բան ասեց, որ իրեն էլ անհավատալի թվաց։ Այն հարցին, թե ցույց տուր քարտեզի վրա Աֆղանիստանը, ցույց տվեց Յեգիպտոսը։

Դրանով վերջացավ «քաղմարտը», որը տևեց յերկու ժամ։

Առաջին և յերկրորդ դասակները նստել եյին իրար դիմաց և հարցեր եյին տալիս։ Հաղթեց այն դասակը, որը շատ հարցերի եր պատասխանել։

**Կարմիր բանակն ուժեղ է ոչ միայն իր ռազմական պատրաստականությամբ, այլ նաև յուրաքանչյուր կարմիր մարտիկ գիտե, թե ովքեր են նրա թշնամիներն ու բարեկամները, ում շահերն է նա պաշտպանում։ Սրանում է մեր բանակի մեծ ուժը։**

## ԼԵՆԻՆՅԱՆ ԱՆԿՅՈՒՆՈՒՄ

Կարմիր բանակայինները նոր եյին վերջացրել «մեռյալ ժամը», յերբ լսվեց.

— Ընկերներ, բոլորդ դեպի լենինյան անկյուն։ Այսօր լավ պար յեկողի մրցում կա։

Բոլորն շտապում են դեպի լենինյան անկյուն։ Այնտեղ աշխատում են զանազան խմբակներ, կարելի է լսել հետաքրքիր զրույցներ և կարդալ լրագիր։

Լենինյան անկյունը մի ընդարձակ սենյակ է, ելեկտրական առատ լույսով։

Պատերը զարդարված են պլակատներով, մի անկյունում կախված է առողջապահության տախտակը, որից կարող ես իմանալ, թե ինչպես պետք է, որ առողջ լինես, նրանից աջ գտնըվում է հարց ու պատասխանի տախտակը և ապա՝ պատի թերթը։ Այդ բոլորի դիմաց տեղավորված է ռազմական անկյունը՝ զանազան տեսակի զենքերով, քանդած հրացանով, ռազմաքիմիական գործին վերաբերող նյութերով և այլն։

Սեղանների վրա դասավորված են թերթեր և գրքեր, շաշկի, շախմատ։

Ահա այնտեղ, լուսամուտի մոտ, նստած է չիրաքիլեցի Արտաշը, որը թղթի վրա մեկիկ մեկիկ դուրս է բերում տուն ուղարկելիք իր նամակի տառերը։ Նա հիմի կոմյերիտական է և ակտիվ կարմիր բանակային։ **Մի յերկու ամիս առաջ նա անգրագետ եր, իսկ հիմա նամակ է գրում դեպի գյուղ։** Իսկ նրա նման քանիսները կան, որոնց դաստիարակում է բանակը։ Բանակից դուրս են գալիս Խորհրդային Միության համար պետքական քաղաքացիներ։

**Կարմիր բանակը ոչ միայն ռազմական դպրոց է, այլ նաև մի դպրոց է, որը դաստիարակում է նոր, կուլտուրական մարդ։**

Լսվում է զուռնայի և դհոլի ձայնը, սկսվում է պարը։ Բոլոր կարմիր բանակայինները մեծ ընտանիքի անդամներ են։ Ահա ինչու այդքան ուրախ են անցկենում նրանց ժամերը լենինյան անկյունում։

Հնչեցին զարձյալ շեփորները, մարտիկներն շտապում են յերեկոյան ըստուգման։

Իսկ կես ժամից հետո ամեն ինչ լռում է։ Զորանոցը քնած է անուշ և առողջ քնով։ Թըկթկում են ժամացույցները և պահակները հսկում են որվա աշխատանքից հոգնած մարտիկների քունը։



# ՎԱՌՈԴԸ ՊԵՏՔ Ե ՉՈՐ ՊԱՀԵԼ

**(Մեր ռազմական աշխատանքների մասին)**

«Խորհրդային յերկրի համար այս ծանր ժամանակներին, պատերազմական վտանգի այս մոմենտին — թող յուրաքանչյուր **պիոներ լինի պատրաստ**։

Պետք է լինել դիսցիպլինար, ճշտապահ և կատարող. կատարիր այն բոլոր առաջադրությունները, որ հանձնարարում են քեզ։ Լինել առաջինը՝ դպրոցում թե քաղաքում՝ աշխատանքային գործունեության մեջ։ Ուշադրությամբ կարդալ թերթեր ու հանդեսներ։ Աչալուրջ կերպով հետևել մեր թշնամիների բոլոր գործողություններին, մեր թշնամիների փորձերին, վորոնք նպատակ ունեն Խորհրդային Միությունը պատերազմի մեջ գցել։ Իմանալ շարքի կանոնները, անդամություն և նշանառություն, ծանոթանալ հրաձգային խմբակներին և այլն»։

Այսպես էր գրում Կենտրոնական Բյուրոն աշխատավորների բոլոր յերեխաներին՝ իր հրահանգի մեջ, անցյալ տարի, հունիսյան օրերին։

Ընկեր Վոյկովը, մեր ներկայացուցիչը Լեհաստանում, սպանված էր Խորհրդային Միության թշնամիների կողմից։ Րոպե առ րոպե սպասվում էր, թե կպայթի պատերազմը։ Յերկիրը լարված էր ծայր աստիճան։ Յուրաքանչյուր բանվոր, յուրաքանչյուր գյուղացի ուշադրությամբ հետևում էր զարգացող դեպքերին, հանկարծակիի չգալու համար։

Պիոներներին և աշխատավորների բոլոր յերեխաներին ուղղված հրահանգը մոռացության տալ չի կարելի և հիմա։ Նա վերաբերում է մեր ուղին ու աշխատանքը առաջիկա տարիների ընթացքում։ Ո՞վ կարող է ասել, թե յերբ ենք ստիպված լինելու ձեռք առ ձեռք ընդհարվելու մեր թշնամիների հետ։ Հարկավոր է միշտ հիշել պատերազմի վտանգը և պատրաստվել մեր կողմից հակահարված տալու։

Մեր դասակարգային թշնամիները ֆաշիստներն ու բոյ-սկաուտները քնած չեն, նրանք այդ ուղղությամբ մեծ աշխատանք են տանում։ Նրանք վոչ միայն զբաղվում են նրանով, վոր կրում են լայնեզր գլխարկներ, զարդարում կուրծքը զանազան նշաններով ու ժապավեններով։ Նրանք լուրջ կերպով պատրաստվում են ապագա պատերազմներին։



**Առանց վրիպելու նշանին պետք է խփել**

Բոյ-սկաուտները միշտ էլ հանդիսացել են կապիտալիստների հուսալի հենարանը։ Օրինակ, 1914 թվին, յերբ Անգլիան պատերազմ հայտարարեց Գերմանիային, յերկու ժամվա ընթացքում յերկրի բոլոր բոյ-սկաուտներն արդեն աշխատանքի եյին անցել. պահպանում եյին կամուրջները, փոխադրում գութաններ, աշխատում հեռախոսի վրա։ Ահա մի օրինակ նրան, թե ինչպես պետք է կարգապահ ու կազմակերպված լինել։ Աշխատավորների յերեխաները դրանից ավելի կարգապահ ու կազմակերպված պետք է լինեն։

Կոլլեկտիվներում և օղակներում, դպրոցներում ու մանկատներում, ամենուրեք մենք պետք է հիշենք մեր անելիքների մասին և այդ ուղղությամբ աշխատանք տանենք։ Կարելի է շատ բան անել։ Ճշտապահություն աշխատանքի մեջ, հանձնարարված առաջադրությունները ժամանակին կատարելը,— սրանք են մարտիկի լավ հատկությունները։ Ցրվածություն կա մեր ամեն մի մանր աշխատանքի մեջ։ **Հարկավոր է այնպես անել, վոր կարելի լինի ամեն մի րոպե հավաքել կոլլեկտիվը՝ այս կամ այն առաջադրությունը կատարելու համար։**

Մեծահասակ պիոներները կարող են շատ լավ կերպով ուսումնասիրել հրաձգային գործը և դառնալ լավ հրաձիգներ։ Կոլլեկտիվներում կամ դպրոցներում հարկավոր է լավ հրաձիգի մրցում հայտարարել, այդ հետաքրքրություն կառաջացնի դեպի հրաձգային գործը։

Սանիտարներ կարող են և պետք է լինեն բոլորը։ Իմանալ վիրակապությունը, իմանալ, թե ինչպես կարելի է դադարեցնել արնահոսությունը, ինչ միջոցներ ձեռք առնել այրվածքների դեմ և այլն։ Վոչ միայն հարկավոր է իմանալ, այլև անհրաժեշտ է, վոր դու կարողանաս իմացածդ գիտելիքները գործադրել կարիք յեղած դեպքում։

Մարզելի նշանախոսությամբ և դրոշակախոսությամբ զբաղվելը կտա մեզ կապի նոր բանակ։ Բացի դրանից, նշանախոսությունը մի շարք գնահատելի հատկություններ է զարգացնում, վորոնց օգնությամբ կարելի է մի շարք հետաքրքիր ռազմական խաղեր, քիմական հարձակման ու պաշտպանության վարժություններ անցկացնել և այլն։ Հետո հարկավոր է ծանոթանալ հակագազերի և գազերի հատկությունների հետ։ Այս բոլորը շատ գրավիչ աշխատանք է թե պիոներների և թե դպրոցականների համար։

Խաղերը նույնպես անհրաժեշտ է օգտագործել ռազմականացման մեր աշխատանքների ընթացքում։ Յեվ շենքի մեջ, և փողոցում, և դաշտում կարելի է հետաքրքիր ռազմական խաղեր կազմակերպել։ Ռազմական խաղերի միջոցով դու կարող ես սովորել հետախուզություն և քողարկման տարրական ձևերը։ Յեվ վերջապես՝ վերջին տեղը չպիտի գրավի նաև զրույցների անցկացումը։ Կոլլեկտիվներում ամբողջ աշխատանքը բաժանվում է օղակների մեջ, իսկ դպրոցներում կազմակերպվում են **Պաշ—Ավիաքիմի**՝ բջիջներ կամավոր սկզբունքներով։ Ռազմականացման աշխատանքների համար ղեկավարներ կարող ես ճարել ձեզ հետ կապ հաստատած կարմիր բանակային զորամասի բանակայինների ու հրամանատարների միջից կամ **Պաշ—Ավիաքիմից** պահանջելով։ Ռազմական աշխատանքի միջոցով մենք կդաստիարակենք լավ մարտիկներ։

Ո՞վ գիտե, թե յերբ կպայթի պատերազմը։ Սակայն պատերազմի վտանգը կա։

Վառոդը պետք է չոր պահել։

**Ս. Առաքելյան**



ԸՆԿ. ՖՐՈՒՆԶԵ

# ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ԱՌԱՋՆՈՐԴ ՅԵՎ ԿԱԶՄԱԿԵՐՊԻՉ ԸՆԿ. ՖՐՈՒՆԶԵՅԻ ՊԱՏԳԱՄԸ ՊԻՈՆԵՐՆԵՐԻՆ

*Պիոներների պատվավոր պարտականությունն է՝ դառնալ կարմիր բանակայինի մտերիմ ընկերը յեվ բարեկամը, ընկերական համակրանքով օգնել նրան՝ նրա բազմական դժվար աշխատանքի մեջ։*

*Կարմիր բանակայինը մեր Միության արթուն պահակն է. թող նա տեսնելով ձեր հոգացողությունն ու սերը, զգա, վոր ինքը մենակ չէ, վոր նրա հետ է մեր յերկրի ամբողջ աշխատավոր ազգաբնակչությունը, վորը գնահատում է նրա ծառայությունը յեվ պատրաստ է աջակցել նրան։ Ծանոթացրեք կարմիր բանակայիններին ԽՍՀՄ-ի կազմակերպված պատանիների կյանքի հետ։ Ոգնեցեք, վոր նրանք լավ անցկացնեն իրենց ազատ ժամանակը։*



# ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՂԵԿԱՎԱՐՆԵՐԸ



ԽՍՀՄ Ռազմահեղափոխական խորհրդի նախագահի տեղակալ՝ ընկ. ՈՒՆՇԼԻԽՏ



Կարմիր բանակի քաղվարչության պետ՝ ընկ. ԲՈՒԲՆՈՎ

## ՊԱՏԱՆԻ ՄԱՐՏԻԿՆԵՐԸ 1905 ԹՎԻՆ

(Ընկ. Քրումկինայի հիշողություններից)

Պաշտոնապես կուսակցության մեջ ընդունում էին 17—18 տարեկան հասակից։ Բայց վորովհետեվ մեծ քույրերն ու յեղբայրներն այս կամ այն ձևով ընդգրկված էին շարժման մեջ, մասնակցում էին ցույցերին, կարդում յեվ տուն էին տանում գրականություն, մտնում էին «մարտական ջոկատների» մեջ և այլն, փոքրերը, բնականաբար, չէին կարող չնմանվել նրանց։ Նրանք նույնպես էին մասնակցում ցույցերին, ազատությամբ վարում էին «ագիտացիայի» «կոտորները», նրանք մասնակցում էին նաև գործադուլներին, յերբ 9—10 տարեկան հասակում ընկնում էին գործարաններն ու արհեստանոցները։

Հեղափոխական միջավայրում նրանք զգում էին իրենց այնպես, ինչպես ձուկը ջրում։ Հաճախ մեծերը խուսափում էին նրանցից, չէին ընդունում նրանց խմբակների մեջ։ Այն ժամանակ պատանիները կազմակերպում էին իրենց կազմակերպությունը։ Այդ կազմակերպությունն ուներ իր խմբակները, ժողովները, կոմիտեները, գրադարանները. ունեյին խմբագրատուն, բաց էին թողնում թռուցիկներ յեվ այլն։ Նրանք ունեյին շատ խիստ դիսցիպլինա, գաղտնապահություն, յեվ ընդհանրապես նրանք աշխատում էին ամեն ինչում նմանվել մեծերին, նույնիսկ մի քանի վայրերում կազմակերպել էին հատուկ «մարտական ջոկատներ», վորի համար ձեռք էին բերել զենքեր։

Հեղափոխական պատանիների այդ կազմակերպությունը, բացի անչափահասների մեջ աշխատանք տանելուց, իր գործունեության գլխավոր խնդիրն էր համարում օգնել հասակավոր ընկերներին՝ նրանց մղած քաղաքական յեվ տնտեսական պայքարին։

Պատանիները նախազգուշացնում էին շտրեյկբրեխերներին, այնտեղ, վորտեղ գործադուլ էր տեղի ունենում, կոտրում էին գործարանատիրոջ բնակարանի ապակիները յեվ մի շարք այլ անախորժություններ պատճառում նրան։ Նրանք պաշտպանում էին նայեվ հասակավորների ժողովները, հետեվում փոստիկաններին, ժանդարմներին, լրտեսներին յեվ, յեթե կասկածելի մի բան էր նկատվում, իմաց էին տալիս ժողովի հավաքված ընկերներին։

Վատ ժամանակներ էին — գնդակահարություն, բանտ, ծեծ։ Հասակավորները չէին ուզում յենթարկել փոքրերին վտանգի յեվ ամեն կերպ աշխատում էին թույլ չտալ նրանց մասնակցելու քաղաքական ցույցերին։

Բայց այդ բոլորը վոչ մի նշանակություն չէր ունենում։ Ցույցը կարելի էր ամենահմուտ լրտեսներից ծածկել — սակայն չէր կարելի ծածկել պատանի մարտիկների աչքից։ Ընդհանրապես մասսան չէր իմանում առաջուց, թե վորտեղ և տեղի ունենալու ցույցը։ Համարվում էին զանազան պայմանական վայրերում և այնտեղ էին միայն իմանում թե ուր են գնալու։ Չկանչված յերեխաները բռնում էին այնտեղ, կար-

ծեր հոգի տակից։ Նրանք էլ էին ունենում իրենց կարմիր դրոշակը՝ համապատասխան լոզունգներով։ Վախը նրանց համար գոյություն չուներ. վտանգը, վոստիկանների վայրագությունը, կազակների հարձակումը — այդ բոլորը միայն նրանց ուրախացնում էր։ Իսկ իհարկե թագավորական դահիճները չէին խնայում գնդակահարել, ծեծի յենթարկել ցուցարարներին նրա համար, վոր նրանց մեջ յել յերեխաներ կային։

**Աննկուն հերոսություն, անսահման վճռականություն, պատկառանք մեծ մարտիկների առաջ, մանկական բորբոքուն ատելություն դեպի բուրժուաներ յեվ վոստիկանները — ահա թե ինչով էին լցված պրոլետարական մանկիկների սրտերը։**

Վոստիկանը, վորը շաբաթ օրը թափառում էր կասկածելի թաղերում, ժողով փնտրելու նպատակով, նրա մոտից չէր էլ անցնում, վոր իր կողքից արագությամբ անցնող փոքրիկը գնում է **նախազգուշացնելու** ժողովականներին, փչացնելով այդպիսով նրա ամբողջ գործը։

Վարշավայի ընկերները պատմում էին.— 1905 թվին էր. Վարշավայի փողոցներով անցնում էին մի խումբ յերեխաներ կարմիր դրոշակով։ Նրանց վրա կրակ են բաց անում։ Մի պահ խումբը յետ է մղվում։ Բայց առաջին շարքերից լսվում է. «չփախչել, «առա՛ջ», և փոքրիկ ցուցարարները շարժվում են այն կողմը, վորտեղից կրակում էին։

1905 թվին Մինսկի հեղափոխական ցույցերին բանվոր յերեխաները մեծ մասնակցություն են ցույց տվել։ Մի ցույցի ժամանակ ընկավ 14-ամյա անչափահաս բանվոր Աբրամ Գիմելշտեյնը։

Պատմում էին, վոր յերբ սկսվեց կրակոցը, ցուցարարներն սկսեցին փախչել։ Աբրամը դուրս յեկավ փողոցի մեջտեղը յեվ բղավեց. «ընկերներ, կանգ առեք, մի փախչեք։» Այդ րոպեյին գնդակը ծակեց նրա կուրծքը, նա ընկավ յեվ արյունով ներկեց փողոցը։ Իսկ ավագ ընկեր կոշկակար Թաչկովսկին (այժմ կոմունիստ) բարձրացրեց նրա անկյանք, արնաշաղախ մարմինը և բացականչեց. «Ահա, դրա՛նք սպանեցին մեր փոքրիկ ընկերոջը։»

Այդ կատարվեց Բազարնայա փողոցում, հենց այնտեղ, վորտեղ այժմ գտնվում է Մինսկի կոմսոմոլի ակումբը։

Մեկ ամսից հետո գերեզմանոցում, այդ ցույցի ժամանակ ընկած բանվորների գերեզմանի վրա, գումարվեց ժողով։ Հազարից ավելի բանվորներ էին հավաքվել։ Ընկերները զարդարեցին փոքրիկ Աբրամի գերեզմանը յեվ փոքրիկ տախտակ ամրացրին, վորի վրա կարմիր ներկով գրված էր.

**«Ապրել ազատության մեջ,**
**մեռնել պայքարում։**
**Քո ընկերները»**

1917 թվին, վերադառնալով Մինսկ, յես գնացի այցի դեպի այդ գերեզմանները։ Յես գտա։ Բայց տախտակը չկար։ Յեվ գերեզմանը համարյա թե հավասարվել էր հողի հետ...

**Սակայն այնտեղ, ուր հողը ծծեց փոքրիկ մարտիկի արյունը, բարձրանում է այսօր կոմսոմոլի ակումբը։**

**Մարտիկների շարքերում, վորոնք ընկել են ապագա սերունդների յերջանկության համար, այդ շարքերում կան մանկական ստվերներ։ Այնպիսի յերեխաների ստվերներ, վորոնք ընկել են վոչ թե վորպես զոհեր, այլ վորպես մարտիկներ։ Նրանց ակնածությունը պահենք մեր հիշողության մեջ այդ ամենաանուշաբույր, ամենանուրբ, ամենաբանաստեղծական պատկերները մեր հին պայքարների, տանենք նրանց մեզ հետ դեպի գալիք պայքարները, գալիք հաղթանակները։**



Ա.Լ-Ս

# ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿՈԼԵԿՏԻՎՆ ՈՒ ԳԱՐՆԱՆԱՑԱՆԸ

## ԱՌԱՆՑ ԾՐԱԳՐԻ ՎՈՉ ՄԻ ԳՈՐԾ ԱՌԱՋ ՉԻ ԳՆԱ

Գարունը մոտենում է։ Բոլոր պիոներներն էլ անհամբեր սպասում են, թե չե՞րբ են դաշտ դուրս գալու, կոլեկտիվի հողամասը մշակելու։ Բոլորս էլ գիտենք, որ առանց ծրագրի, առանց պլանի, վոչ մի գործ հաջողությամբ չի կարելի առաջ տանել։ Ամեն մի պիոներ լավ պիտի գիտենա, որ մեր յերկրում ամեն ինչ ծրագրով, պլանով է առաջ տարվում, լինի դա ժողովրդական տնտեսության զարգացումը, կուլտուրական-լուսավորչական աշխատանքները, որևէ հիմնարկի կամ գործարանի գործունեյությունը։ Նույնը կարելի չէ ասել պիոներական կոլեկտիվի և ոդակի աշխատանքների մասին։ Այստեղ էլ առանց պլանի, առանց նախորոք կազմված ծրագրի ոչինչ չի արվում։



Զափում են կովին քաշն իմանալու համար

## ՀԱՐԿԱՎՈՐ Է ՀՈՂԱՄԱՍ ՃԱՐԵԼ

Գյուղատնտեսական աշխատանքների ծրագիրը դեռ չկազմած, հարկավոր է մտածել հողամաս ձեռք բերելու մասին։ Կոլեկտիվը իր դաշտը պիտի «հիմնե» գյուղացից վերցրած հողամասի վրա։ Անհրաժեշտ և պարտադիր չէ, որ կոլեկտիվը «մեծ» հողամաս ունենա։ 100 քառակուսի մետր հողամասը բավական է։ Կոլեկտիվը հողամասը բաժանում է 4 մասի և յուրաքանչյուր մասում առանձին բույս է մշակում։

Օրինակ, 1-ին մասում կարելի յե ցանել ճակնդեղ, 2-րդ մասում՝ ցորեն, 3-րդ մասում՝ վիկ, 4-րդում՝ յեգիպտացորեն։

Իսկ դաշտային մասի պիոներները ցանում են բամբակ, առվույտ, ցորեն, ծխախոտ կամ բանջարեղեն։

Կոլեկտիվը յերբ վորոշեց՝ թե ինչ բույսեր է ցանելու իր հողամասում, կոլեկտիվի գյուղատնտեսական աշխատանքների ծրագրի (պլանի) մեջ ավելացնում է, թե ինչքան սերմ է հարկավոր։ 25 քառակուսի մետր հողի վրա ցանում են ճակնդեղի 75-90 գրամ սերմ։ Նույն չափ հողամասի վրա ցանում են 10 կիլո ցորեն, 7 կիլո վիկ, 4 կիլո յեգիպտացորեն։

Յերբ ձեռք բերած հողամասի համաձայն աշխատանքի պլանն արդեն կազմված կլինի, հարկավոր է գիմել վարկային ընկերությանը, Հայգյուղկոոպին, կամ անմիջապես ագրոնոմին՝ այդ սերմերը ձեռք բերելու համար։ Մինչև ցանքսը բոլոր սերմերն էլ պատրաստ պիտի լինեն, որ աշխատանքի ընթացքում ժամանակ սերմ ճարելու գործով չզբաղվեք։

Այժմվանից կոլեկտիվը պիտի մտածի իր դաշտը պարարտացնելու մասին։ Դրա համար մի տեղ պիտի հավաքել գոմի և բակի աղբը, մոխիրը, որ ձյունը հալչելիս հողամասը պարարտացվի։ Գյուղում պիոներն է, որ պիտի պարարտացումի նշանակությունը պարզի, իմանա ու տարածի։

## ԻՆՉՊԵ՞Ս ՎԱՐԵԼ ՈՒ ՑԱՆԵԼ

Այս բոլորից հետո հարկավոր է մտածել հողը վարելու կամ փորելու մասին։ Յեթե հնարավոր չե գութանով կամ արորով վարել, կոլեկտիվը կարող է պիոներների միջոցով բահերով հողը փորել։ Պետք է ասել, որ հողը մշակելու համար բահով փորելն ավելի լավ է, քան վարելը։ Պիոներական կոլեկտիվի հողամասում բոլոր սերմերն էլ անպայման շարքացանով պիտի ցանել։ Ուրիշ կերպ ցանելն անթույլատրելի յե։ Քանի որ հողամասը փոքր է, հարկավոր է ցանքսը ձեռքի շարքացանով անել։ Ամեն մի ագրո-կայանի վարձակետից կարելի յե շարքացան ստանալ։



Հակամեծրեբրիկները վարձակայանում

## ՇԱՐՔԱՑԱՆԸ ՎՈ՞ՆՑ ՊԻՏԻ ԱՆԵԼ

Ցորենի շարքերը սովորաբար մեկը մյուսից 2 վերշոկ հեռավո-

բուլթյան վրա յեն անում, միկը նույնպես, իսկ ճակնդեղի և յեգիպտացորենի շարքերն իրարից 9-12 վերշոկ հեռավորության վրա յեն անում։

Մինչև իսկ կարելի յե առանց շարքացանի էլ ցանքսը շարքերով կատարել։ Դրա համար, հողը վարելուց հետո, 2 պիոներ, դաշտի յայնության յերկարությամբ մի թել են վերցնում։ Պիոներներից մեկը գնում է դաշտի մի կողմից, յերկրորդը, մյուս կողմից։ Յենթադրենք ճակնդեղի ցանքսն են կա-



Փանիկի պիոներները — շարքացանը գործածել սովորելիս

տարում։ Հենց դաշտի գլխից թելը հողին սեղմելով գիծ են անում, յերկրորդ գիծն էլ 9 կամ 12 վերշոկ հեռու յեն անում և այդպես շարունակում են։ Մեկ ուրիշ պիոներ էլ այդ թելի գծով բռնելով



Յաստղուլի պիոներներն այս հորթին մեծացրել են իրենց ցանած ճակնդեղով

(ցից) փոս է անում, մեկ ուրիշն էլ շշի մեջ ածած սերմ լցնում է փոսի մեջ ու ձեռքով հողով ծածկում։

Ճիշտ նույնպես էլ ցանում են մյուս սերմերը։

## ՏԵՍԱԿԱՎՈՐ ՍԵՐՄ ՊԻՏԻ ՁԵՌՔ ԲԵՐԵԼ

Լավ կանեք, յեթե խորհրդային, կոլեկտիվ կամ առաջավոր գյուղացիների տնտեսություններից և փորձակայաններից ձեռք բերեք տեսակավոր սերմեր։

Մեծ ուշադրություն պիտի դարձնել նաև սերմացվի տեսակի վրա։

Մեծ բերք ստանալու համար վորքան նշանակություն ունի հողի պարարտացումը, լավ մշակելն ու մեքենաներ գործածելը, նույնքան նշակություն ունի և լավ սերմացուն։ Լավ սերմացվից ավելի մեծ բերք կստացվի, քան սովորական սերմերից։

Պիոներական կոլեկտիվը ամեն կերպ պիտի աշխատի իր բոլոր աշխատանքների մասին խորհուրդներ հարցնի շրջանի ագրոնոմից։

Առայժմ այսքան։

Պիոներական կոլեկտիվ, գարնանացանի համար պատրաստ։

— ՄԻՇՏ ՊԱՏՐԱՍՏ ԵՆՔ։



# ԴԻՏԵՆՔ ԳԱՐՈՒՆԸ

Գարունը դիտելու համար հարկավոր է գործի անցնել դեռ ձյունը չհալված։ Պետք է պահել համառ հուշատետր, վորտեղ ամեն օր նշանակել բնական աշխարհի փոփոխությունները — բույսերի ու կենդանիների, թռչունների և միջատների կյանքի ու կենցաղի փոփոխությունները՝ յեղանակի փոփոխման հետ։ Նման ուսումնասիրություն, բնությունը սիրող պիոներները, պետք է կատարեն ամբողջ տարվա ընթացքում։ Այս անգամ բերում ենք գարնան ուսումնասիրության մի քանի համառոտ օրինակներ, վորպեսզի ցույց տանք պիոներներին, թե ինչի վրա պետք է ուշք դարձնել։

**ԳԱՐՆԱՆ ՕՐԱՀԱՎԱՍԱՐԸ.**— Ըստ տիեզերաբանության՝ գարունն սկսվում է ամեն տարի մարտի 21-ից, յերբ օրն ու գիշերը հավասարվում են, իսկ հետո աստիճանաբար օրը յերկարանում է, գիշերը կարճանում։ Բայց բնությունն ուսումնասիրելիս եղանակն այդ չէ համարվում, այլ բնական, կենդանի ու անկենդան աշխարհի «արթնանալը», «կենդանանալը»։ Այս տեսակետից գարունն ամեն տարի և ամեն տեղ միևնույն ժամանակ չի սկսվում, վորքան գնում ենք դեպի հյուսիս, այնքան գարունն ուշ է բացվում։

**ԻՆՉՈՒ ՅԵՆ ՕՐԵՐԸ ՏԱՔԱՆՈՒՄ.**— Դիտեցեք, տեսեք, թե ձմեռն արևը վորտեղից եր «դուրս գալիս», վորտեղ եր անցնում ու վորտեղ մայր մտնում, և համեմատեցեք գարնան հետ։ Գարնանը քանի գնում, այնքան արեգակը բարձրանում է և նրա ճառագայթները քանի գնում՝ այնքան ուղղորդ են ընկնում մեր յերկրի վրա։

Այդ կարող է ամեն մի պիոներ փորձել։ Ձեր բակում մի փայտ անկեցեք և ուղիղ ժամացույցով, ժամը 12-ին չափեցեք նրա շողքը։ Այդ նույն փայտի շողքը չափեցեք մի շաբաթ հետո։ Կտեսնեք, վոր շողքը կարճացել է. իսկ վորքան կարճ է շողքը, նշանակում է, այնքան «բարձր է» արեգակը։ Ամեն որ կարող եք համոզվել, վոր կեսօրին, յերբ արևը «բարձր է», առարկաների շողքը կարճ է, իսկ առավոտյան և յերեկոյան վերջալույսին՝ յերկար։

Վորքան արևի ճառագայթներն ուղղորդ, կամ ուղղահայաց ընկնեն յերկրի վրա, այնքան մենք ավելի ջերմություն կստանանք։ Փորձի համար վերցնենք 6 հատ իրար զուգահեռ գծեր և յենթադրենք, թե դրանք արևի 6 ճառագայթներ են։ Վերցնենք մի գիծ էլ (ա — բ), վոր միշտ հորիզոնական է և համապատասխանում է մեր յերկրի մի կտոր տարածության։ Այժմ,




Նկ. 1.




Նկ. 2.




Նկ. 3.

նկարների վրա պարզ յերևում է, վոր յերբ այդ 6 ճառագայթը միասին թեք են ընկնում, ապա ա — բ գծի վրա ընկնում է միայն 4 ճառագայթ (Նկ. 1). յերբ ճառագայթները մի քիչ ավելի ուղղորդ են ընկնում, ա-բ գծի վրա ընկնում են արդեն 5 ճառագայթ. (Նկ. 2)։ Իսկ յերբ այդ ճառագայթները բոլորովին ուղղահայաց են ընկնում, նույն ա-բ-ի վրա ընկնում են բոլոր 6 ճառագայթները, հետևաբար այս դեպքում ա — բ գիծը. վոր մեր յերկրի մակերեսի մի կտորին եր համապատասխանում, ավելի շատ ջերմություն կստանա, քան նախորդ դեպքերում։ Ամեն որ էլ կարելի յե նկատել, վոր կեսօրին, յերբ արևն «ուղիղ մեր գլխի վերևն է», այն ժամանակ նա շատ է տաքացնում։ Իսկ առավոտն ու իրիկնադեմին, յերբ ճառագայթները թեք են ընկնում, ավելի զով է լինում։

**ԱՅԺՄ ՏԵՍՆԵՆՔ, ԹԵ ԻՆՉՊԵՍ Է ՓՈՓՈԽՎՈՒՄ ՁՅՈՒՆԸ, ՕՐԵՐԻ ՏԱՔԱՆԱԼՈՒ ՀԵՏ**

Ձյունն ավելի փխրուն է դառնում և ջրոտ։ Դիտեցեք և կտեսնեք, վոր ձյունն ամեն տեղ միաժամանակ չի հալվում։ Ուշք դարձրեք, թե վորտեղ, ինչպես է հալվում և ինչու։

Ձյունի վրա կարելի յե փորձ կատարել։ Վերցրեք մոմի վրա լավ սևացրած-մրոտած մի թիթեղի կտոր և մրոտած յերեսը դեպի արևը դրեք ձյունի վրա ու հետևեցեք, թե վորտեղ է շուտ հալվում ձյունը։ Կտեսնեք, վոր թիթեղի տակի ձյունն ավելի արագ է հալվում, նույնիսկ փոս է ընկնում։ Այդ նրանից է, վոր սև գույնն ավելի լավ է կլանում արևի ճառագայթները — քան սպիտակը։

Գարունը մոտենալիս տանիքների յեզրերից կախվում են սառցե յերկար ծծակներ (сосульки)։ Մտածեցեք, թե ինչու են նրանք այդպիսի տեղեր կախվում և ինչու յեն հետզհետե յերկարում — աճում։

ՀՈՂՄԱՑՈՒՅՑ.— Գարնանը յերկնքի պարզությունն ու օդի ջերմությունը կախված են նաև քամու ուղղությունից: Քամու ուղղությունն իմանալու համար ոգտվում են հողմացույց կոչված գործիքից (տես նկ.), վորը դրված է լինում մի բարձր տեղ և քամին նրան դառնում է այն կողմը, դեպի ուր նա փչում է, իսկ այդ ուղղությունը կարելի յե վորոշել կողմնացույցով:

Նկարին նայելով, ամեն մի պիոներ կարող է պատրաստել իր համար մի այդպիսի հասարակ հողմացույց:

Հասարակ հողմացույց

ԿԵՆԴԱՆԻՆԵՐԸ, ՄԻՋԱՏՆԵՐԸ, ԹՌՉՈՒՆՆԵՐԸ ՅԵՎ ԲՈՒՅՍԵՐԸ. Ջրերի բացվելու հետ հայտնվում են ճայերն ու խայտամանիկները, ու ջրի մոտից չհեռանալով՝ վորսում գետի հատակից նոր վեր բարձրացած ձկներին:

Չվող թռչուններից մեզ մոտ, ԽՍՀՄ-ի հարավում, առաջինը հայտնվում է տարմահավը: Սրանց համար մարդիկ սովորաբար տնակներ են շինում, վորովհետև սրանք այն թռչուններից են, վորոնք ուտում են բանջարանոցը փչացնող միջատներին: Սրանք սև են և բծավոր, ճանաչվում են իրենց ուրախ յերգով և արագ շարժումներով: Շուտով վերադառնում են դաշտային արտույտները (жаворонок) և թաթվելով ձյունից նոր ազատված տեղերի վրա, բարձրանում վեր-վեր, և յերկնքի խորքից լսվում է նրանց գիլ յերգը՝ «տիր-լիր-լիր-լիր յու, տիր-լիր-լիր լիր-յու-յու-յու»:

Անտառում են կյանքն սկսում է արթնանալ: Բներից ու վորջերից դուրս են գալիս անտառի կենդանիները: Դեռ մարտ ամսին փչակների մոտ կարելի յե տեսնել սկյուռին և նրա ձագուկներին:

Յերբ որ տաքանում է՝ արեգունի (արևոտ) տեղերում հայտնվում են խումբ-խումբ դժժացող ճանճեր ու մլակներ: Դեռ մերկ անտառում շուտով լսվում է սարյակի (скварец) գվարթ յերգը: Սարյակը չալպուտուրիկ է և նրա վրա կան համարյա բոլոր գույները: Սարյակի յերգը գրի յե առնված այսպես՝ «ֆիտծ-ֆիր-լիտծ-ֆիտծ-ֆիտծ ֆյուտծ-ֆյուտծ-ֆյուտծ-ֆյուտծ-ֆյուտծ-լյու-լյուլյուլյուլյուլյուվի-չյու»:

Արտույտից հետո վերադառնում են վայրի սագերը, բադերը, կռունկները, արագիլները և այլն: Կռունկների վերադարձող յերամներն անկյունաձև են, բարձր, բարձր թռչում են նրանք ու գարնան օդը լցնում իրենց խրախուսիչ կըռկռոցով: Կռունկների վերադարձը նշան է գարնան լիակատար հաղթանակի:

Գարնան առանձին նշաններից է բուսական աշխարհում թխկի (клен) և կեչի (վողորենի-береза) ծառերի մեջ հյութի շարժումը:

Մեզ մոտ այս հյութը գովված խմիչքներից է յեղել: Դիտելու համար, թե յերբ կսկսվի այդ հյութի հոսանքը, հարկավոր է ծառի բունը ծակել և այդ անցքի առաջ մի աման ամրացնել ու հետևել, թե յերբ, վո՞ր ամսին, վո՞ր օր և որվա ինչ ժամանակ հյութը կթափվի ամանի մեջ:

Դրանից հետո ծառերի վրա սկսում են բացվել բողբոջները, ծաղկում են ուռենին, տասենին (ոլխա), հոնին, ծիրանին, սալորենին և մյուս ծառերը: Շուտով հայտնվում են առաջին ծաղիկները, իսկ ձյունը հալվելուց անմիջապես հետո, արեգունի տեղերում գլուխը հանում է բոլորից ծանոթ ձնծաղիկ (խլոպող): Անտառներում և խոնավ տեղերում շուտով ծաղկում են դեղին վոսկեծաղիկը (հավկուր, վաղինակ) և «ագռավի մանուշակը»: Մեզ մոտ դեռ մարտին և ապրիլի սկզբներին անտառները լցվում են կապույտ մանուշակով և նրա նուրբ բուրմունքով:

Ինչպես են յերևում սագը, կռունկը, ջրցուլը թռչելու ժամանակ

Գարնան սկզբներին ուշադիր աչքը գետնի մակերեսի վրա նկատում է հողի մեջ ապրող վորդերի, ճիճուների կղկղանքը: Շատերը չեն էլ մտածում բացատրել այդ, բայց դա ցույց է տալիս, վոր գետնի վերին շերտերը բավական տաքացել են և վորդերը ցածի շերտերից (վորտեղ նրանք ձմեռում են) տեղափոխվել են վերին շերտերը:

Գետնի վերին շերտերի տաքանալու հետ մոտենում է բանջարանոցների և գարնանացանի

ժամանակ։ Գյուղացիք իրենց նախիրը հանում են բլուր՝ ձյունից ազատված թփերը կրծելու համար։

Գարնան նշաններից է նաև առաջին անձրևը և կարկուտը։

Շուտով հայտնվում են թիթեռները։ Գարնանն ամենանկատելին լեղինջաթիթեռն է, նա կարմրաշագանակագույն է, սև գույներով և կապույտ բծերով։ Սրանք պատահում են անհամար թվով, միասին։

Համարյա այդ նույն ժամանակ անտառներում լսվում է հոպոպի «յերգը», «հուպհուպոպ, հուպհոպոպ» կամ «ուպուպուպ» (այստեղից է յուր հայերեն հոպոպ անունը)։

Այնուհետև վերադառնում են ծիծեռնակները։ Նրանք լինում են 2 տեսակ, այսպես կոչված՝ գյուղական և քաղաքի։ Գյուղական ծիծեռնակի ճակատը և կուրծքը գորշ-կարմիր են, իսկ քաղաքի ծիծեռնակի պոչից վերը (надхвостье) սպիտակ է։ Ճյուղի վրա նստած ժամանակ գյուղականի պոչը չեղանի նման բաժանվում 2 մասի, իսկ քաղաքի ծիծեռնակինն այդպես չի լինում։

Շուտով լսվում է կկուի «կուկուն», իսկ հետո դեռ չսաղարթավորված, կամ նոր սաղարթավորված անտառում լսվում է սոխակի գեղգեղանքը։

Աղջամուղջերին ծառերի վրա խումբ-խումբ հավաքվում են շագանակագույն մայիսյան բզեզները, ջորիակները։

Գարնան վերջին, ուշացած վերադառնում է ջրածիծառը (стриж), կամ աշտարակի ծիծեռնակը։ Սրանք իրենց բները շինում են զանգակատներում և աշտարակների վրա։ Ջրածիծառը սովորական ծիծեռնակից շատ է տարբերվում, գիտնականները նրան նույնիսկ բոլորովին այլ ընտանիքի յեն դասել։

Ջրածիծառը ծիծեռնակից մի քիչ մեծ է, և ամբողջովին սև։ Միայն կոկորդի վրա կա մի սպիտակ բիծ։ Նրա չորս մատն էլ ուղղված են դեպի առաջ, որի շնորհիվ նա կարողանում է ճարպկորեն կպչել ուղղորդ քարափների, քարե և աղյուսե պատերի ամենափոքր ցցվածքներից, բայց և նույն պատճառով նա չի կարողանում նստել բարակ ճյուղերի, կամ հեռագրալարերի վրա, ինչպես սիրում են անել ծիծեռնակները, որոնց մի մատն ուղղված է դեպի յետ։ Ջրածիծառին կարելի յե ճանաչել նաև նրա ձայնից։ Ջրերի վրա, մլակների յետևից ընկած՝ նետի արագությամբ թռչում է և ականջ ծակող ձայն հանում՝ «վիզզզզզզ, վիզզզզզզզ»։

Հետաքրքիր է նաև դիտել մեղուների գարնան կյանքը, թե յերբ են նրանք սկսում բանել և այլն։ Պետք է նշանակել նաև ծղրիդների, ճպուռների, չերեփուկների առաջին ճռճռոցը։ Գարնան կլիմայական յերևույթներն ուսումնասիրելու ձևերից մեկն է յեղանակի օրացույց կազմելը։ Սակայն այդ մասին մի ուրիշ անգամ։

Գ·Ա·Գ·Ի·Կ

---

## ԳԱՐՈՒՆԸ ԴԻՏԵԼՈՒ ՀԱՄԱՌՈՏ ՑՈՒՑԱԿ

(Ըստ Պակրովսկու)

1) Ուղիղ ժամացույցով նշանակել արևի մայր մտնելու ժամանակը՝ մարտի 1-ին, 7-ին և 21-ին, ապրիլի 1-ին և մայիսի 1-ին։

2) Նշանակել այն տեղերը, վորտեղ ամենաշուտն է սկսում հալվել ձյունը։

3) Նշանակել գարնան առաջին թռչունների վերադառնալու ժամանակը։

4) Նշանակել գարնան ընթացքում վերադարձող մյուս թռչուններին և նրանց վերադառնալու ժամանակը։

5) Նշանակել, թե ինչպես է հալվում ձյունը դաշտում, ճանապարհի վրա, անտառում և սառ-մառ—չվաքում։

6) Նշանակել գետերի բացվելու ժամանակը։

7) Նշանակել բուսական աշխարհի արթնանալու ժամանակը, բողբոջների բացվելը, առաջին ծաղիկները, խոտի բուսնելու ժամանակը։

9) Նշանակել առաջին անձրևորդների հայտնվելը, միջատները, սարդերը, սողունները (օձեր, մողեսները)։ Ձկների, գորտերի և նրանց առաջին հայտնվելը։

10) Դիտել կենդանիների բազմացումը (թռչունների ձու ածելը։ Ձկների և գորտերի ձուխար և այլն)։

11) Դիտել մեղուների և միջատների կյանքը։

# «ԿՈՐՉԻ ԳԵՆԵՐԱԼ ՀԻՆԴԵՆԲՈՒՐԳԸ»

*Այս լոզունգով անցկացավ Պատանի Սպարտակների Միության մարտական աշխատանքը մի քանի ամիս առաջ, յերբ Համբուրգում, ինչպես նաև ամբողջ գերմանական մյուս քաղաքներում, տոնում էին հանրապետության նախագահ Հինդենբուրգի ծննդյան 80-ամյակը։ Հինդենբուրգը Վիլհելմ թագավորի ժամանակ յեղել է գերմանական զորքերի գլխավոր հրամանատարը։*

*Աշխատանքը շատ դժվար էր, բայց հաջող անցավ։ Բոլոր դպրոցներում ուսուցիչները փորձում էին պրոպագանդա մղել Հինդենբուրգի օգտին. սակայն Համբուրգի 30 դպրոցներում այդ նրանց չհաջողվեց։*

*Վաղորոք պիոներները յուրաքանչյուր դպրոցում կազմակերպել էին «անկուսակցական» աշակերտներին յեվ յուրաքանչյուր դասարանում նշանակել էին նրանցից փոքրերի, վորոնք ճշտագայում գործում էին պիոներների ցուցմունքներով։*

*Ինչպե՞ս կարողանում էին պիոներները իմանալ, վոր այս կամ այն «անկուսակցական» աշակերտին կարելի յե աշխատանքի մեջ քաշել, վոր նա համակրում է պիոներներին։*

*Շատ պարզ կերպով։* **Նայում էին, թե դասարանում ո՞ւմ նախաճաշիկն է փաթաթված կոմունիստական լրագրի մեջ,—ուրեմն,—վորոշում էին պիոներները,—յեթե նրա նախաճաշիկը փաթաթված է կոմկուսի լրագրով, նշանակում է, վոր տանը մեկը կարդում է այդ լրագիրը, հետեվապես՝ համակրում է մեր պայքարին։**

*Յեվ այդ աշակերտներին մոտենալով, ամենից առաջ նրանցից փոքրերն էին առաջ քաշում։*

*Թե ինչ էին արել այդ փոքրերը, կարելի յե իմանալ պիոներական դպրոցական բջիջների հաշվետվությունից։*

*«Տոնակատարությունը դպրոցում սկսվեց «Գերմանիա, Գերմանիա, դու բարձր ես բոլորից»*) յերգով։ Յերգում էին բոլոր դասարաններում։*



*Խնդրեցի, վոր թույլ տան դուրս գնալ։ Թողեցին։ Յես մտա I-ի դասարանին, թակեցի դուռն, ինչպես պայմանավորվել էինք յեվ հեռացա։*

*Մի քանի րոպեից հետո, յերկրորդ հարկի արտաքնոցն յեկավ Հայնցը (նա լսել էր իմ թակոցը)։ Մենք յերկուսով մոտեցանք II-ի յեվ III-ի դասարանների դռներին յեվ նույնպես թակեցինք։ Շուտով հավաքվեցին բոլոր փոքրերը։*

*Կարճ խորհրդակցությունից հետո, իմանալով դասարանների տրամադրությունը, գնում ենք մեր տեղերը։ Յերգը համարում է մինչեվ յեբերը յեվ մենք 5 հոգով բղավում ենք—«դուրս դպրոցից, կորչի Հինդենբուրգը»։*

*Փոքրերը վաղորոք ամեն ինչ նախապատրաստել էին։ Դասարանների դռները բացվում են յեվ աշակերտները դուրս են գալիս դասարանային սենյակներից։ Ուսուցիչները մնում են կանգնած, կարմրած կատաղությունից յեվ անզոր վորյեվե բան անելու։*

*Հինդենբուրգի պատվին կազմակերպված տոնակատարությունն ամբողջ դպրոցում խանգարվում է։*

*Ահա մեկ ուրիշ հաշվետվություն.*

*«Մեզ մոտ շատ դժվար էր։ Մերն աղջիկների դպրոց է*)։ Տղաների դպրոցում տոնակատարությունը կես ժամով շուտ էր սկսվել։ Այդ մենք գիտեյինք։ Պայմանավորվել էինք, վոր տղաների ցույցը պիտի անցնի մեր դպրոցի լուսամուտների տակով։ Յերբ ցուցարարները մոտեցան մեր լուսամուտներին, բոլոր աշակերտուհիները վեր կացան իրենց տեղերից ու վազեցին դեպի լուսամուտները։ Նույնիսկ ուսուցիչն էլ մոտեցավ լուսամուտին։ Դրսից լսվում է. «Դուրս դպրոցից, կորչի Հինդենբուրգը»։ Մենք նույն լոզունգը կրկնում ենք յեվ դիմում դեպի դուրս։ Տղաներն արդեն ճարել էին բանալիներ յեվ բաց էին արել մեր դպրոցի դռները։*

*Դուրս գալով փողոց, միանում ենք ցուցարար մեր ընկերներին յեվ պարզում ենք կարմիր դրոշակ ...»։*

*Այսպես պատասխանեցին Համբուրգի հեղափոխական յերեխաները բուրժուական ազգայնական տոնին։*

*) Դա հայրենասիրական, միապետական մի յերգ է, վոր այժմ էլ «ազատ» Գերմանիայում յերգում են։

*) Գերմանիայում շատ դպրոցներում տղաները առանձին են սովորում, աղջիկները՝ առանձին։

# ԻՆՉՊԵ՞Ս ԵՄ ՎԱՐԺԵՑՆՈՒՄ ԿԵՆԴԱՆԻՆԵՐԻՆ

*Այս տարի լրացավ իմ գործունեության 50 ամյակը։ 50 տարի յե, վոր յես ուսումնասիրում եմ կենդանիներին, աշխատում նրանց հետ, սովորեցնում, հրահանգում եմ նրանց վոչ թե վորպես տիրակալ, այլ վորպես ուսուցիչ յեվ բարեկամ։ Իմ կենդանիները, չորքոտանի թե թռչուն, իմ բարեկամներն են, իմ ընկերները։ Յեվ յեթե յես կյանքում հասա նրան, վոր հասկանում եմ կենդանիներին յեվ նրանք էլ ինձ, այդ պարտավոր եմ մոտեցման այն ձեվին դեպի կենդանիները, վոր յես մշակել եմ իմ արտիստական յեվ կենդանիներին հասկանալու գործունեության ընթացքում։*

*Առաջներում ինձ վրա ծիծաղում էին, իսկ այժմ... զարմանում են այն բանի վրա, թե ինչի՞ կարելի յե հասնել, քնքշությամբ վերաբերվելով կենդանիների հետ։*

*Յես հիմա ուզում եմ ձեզ պատմել այն մասին, թե ինչպես է հարկավոր վերաբերվել կենդանու հետ, վորպեսզի նա լինի ձեր հավատարիմ բարեկամը յեվ ոգնականը։*

*Դեռ հին ժամանակներից կենդանիներին այս կամ այն գործը սովորեցնում էին անել ծեծի ու բռնության միջոցով։*

*«Դրեսիրովկայի» (վարժեցնելու) ցավագին կամ մեխանիկական*

միջոցն այնպես է հին, ինչպես յէվ աշխարհը։ Վար անողը խփում է յեզանը, փորձելով նա քաշի գութանը կամ արօրը։ Դաստիարակը խփում է ձիուն, փորձելով ձին արագությամբ տանի կառքը։ Կրկեսի դերասանը խփում է կենդանուն, չարչարում, ծանր մտրակներ հասցնում նրան, փորձելով հաստատակամություն ցույց տա «համարը», «արվեստի հրաշքը» յէվ այլն։ Կենդանիներին ծեծել են, ծեծում են միշտ յէվ ամեն տեղ։

Լա՞վ է արդյոք։ Թույլատրելի՞ յե։ Նպատակ ունի՞։

—Վոչ, այդ լավ չե, անթույլատրելի յէվ աննպատակահարմար է, վորովհետեվ կենդանին առանց ծեծի ավելի լավ է յէվ աշխատունակ։ Կենդանիներին վարժեցնելու իմ մշակած միջոցը կառուցված է այլ սկզբունքի, այլ հիմքի վրա։ Այդ հիմքը—դա կենդանուն սերն է դեպի վորոշ գործողություն։ **Այդ պատճառով իմ միջոցը բուլղ չի տալիս ցավագին զգացմունքներ։** Ցավը բթացնում է զգացողությունները, վորը վոչ մի դեպքում թույլատրելի չե։

Բանի եյությունը նրանումն է, վոր կենդանին ազատ լինի ճնշվելու զգացմունքից։ Վոր այդ վատ բան է, հայտնի յե հենց հին «Տեր-Թոդիկյան» դաստիարակությունից։ Այն ժամանակ աշակերտներին ծեծում, նկուղ ներքում փակում եյին յէվ այլն։ Այն ժամանակ աշակերտները չհասկանալով անգիր եյին անում, պատասխանում եյին անմտատ կերպով, հիմարանում եյին։

Ընդհակառակը, անհրաժեշտ է ստեղծել պայման, խրախուսող շրջապատ կենդանու համար։ Իմ աշակերտները՝ կենդանիները միշտ էլ վորյեվե առաջադրություն կատարելու համար ստանում են ինձնից համեղ պատառիկներ. այս ստիպում է նրանց մի քանի անգամ շարունակ հաճությամբ կատարել նույն առաջադրությունը։ Այս՝ յես անվանում եմ խրախուսանք։

Շատերը կարծում են, թե յես կենդանու վրա ազդում եմ քաղցի միջոցով, տեսնելով, վոր յես կենդանու կատարած ամեն մի քայլի համար վորեվե բանով նրան հյուրասիրում եմ։ Վոչ։ Քաղցն ու ցավը բացասական ներգործություն ունեն կենդանու վրա։ Այդ դեպքում քաղցած կենդանու ուշադրությունն ուղղված կլինի քաղցառատես կերակրի վրա, վորը նույնպես, ինչպես յէվ ցավի զգացմունքը, ոգուտ չի բերի, այլ կը հասցնի վնաս։

Այսպիսով, կենդանուն դաստիարակելու իմ միջոցի խնդիրն է՝ սովորեցնել կենդանուն տրված նշանի համաձայն կատարել այս կամ այն գործողությունը։

Յենթադրենք, վոր «հոպ» խոսքն ասելով կենդանին վեր եր թռչում։ «Նստիր» խոսքն ասելիս՝ նստում է, շվի փչելիս-պտույտ գալիս յէվ այլն։

Հետեվապես, վարժեցնելու տեխնիկան յերեք հիմնական մասերից է բաղկացած։

1. Սովորում են կենդանուն կատարել անհրաժեշտ շարժումը։

2. Այնպես են անում, վոր այդ շարժումը կենդանուն պատճառի հաճույք։

3. Միաժամանակ տալիս են համապատասխան ազդանշան։

Յեթե այդ հաջողվում է անել մի քանի անգամ, միատեսակ ձեվով, այդ դեպքում կենդանու ուղեղի մեջ կատարվում է ազդանշանի յէվ շարժման մեջ յեղած կապի վորոշ ամրացում։ Հենց վոր այդ «սովորությունն» ամրապնդվեց, նպատակին արդեն հասած եք։ Կենդանին ամեն անգամ՝ **տրված ազդանշանի համաձայն՝** կկատարի հարկավոր շարժումը։

Օրինակ. յերբ յես ուզում եմ առնետին սովորացնել, վոր պտույտ գա իմ շուրջը տրված ազդանշանի կամ «պտտվիր» խոսքի համաձայն, վարվում եմ այսպես։ Յես պահում եմ առնետի վրա մի համեղ պատառ յէվ նրանով շրջան եմ կատարում ոդի մեջ։ Միաժամանակ յես արտասանում եմ, «պտտվիր»։

Ամեն մի հաջող շարժումից հետո յես տալիս եմ կենդանուն ճաշակելու համեղ պատառը։ Այդպիսի մի քանի վարժություններ՝ յէվ առնետը կսկսի պտույտ գալ իմ շուրջը՝ միայն «պտտվիր» խոսքը լսելով։

Յենթադրենք՝ թե դուք ուզում եք սովորեցնել շանը ձեր հրահանգով նստելու։

Դուք նրան կանչում եք «Տրեզոր» (ընդունենք, վոր դա յե ձեր շան անունը)։ Այդ ժամանակ նրա ականջները բարձրանում են։ Շունը հարցական նայում է ձեզ վրա։ Դուք քնքշորեն կրկնում եք. «Տրեզոր, այստե՛ղ»։ Նա առանց շտապելու բարձրանում է յէվ մոտենում ձեզ, գլուխը քիչ վար իջեցրած, պատրաստ ձեր փաղաքշանքին։ Տեսնելով ու զգալով փաղաքշանքը, շունը հարցական կերպով նայում է ձեր աչքերին յէվ սպասում... Դուք վերցնում եք մսի մի կտոր, շան ուշադրությամբ հետեվում է ձեր ձեռքի շարժումներին։ Դուք պահում եք միսը շան գլխից քիչ վեր, այնպես, վոր նրա գլուխը քիչ յետ թեքված լինի, այդպես նրան ավելի հարմար է մսին նայել։ Յեվ ահա նա իջեցնում է նրատակը, վոր նստի։ Դուք իսկույն յէվ յեթ ասում եք, «Տրեզոր նստի՛ր»։ Շունը նստում է յէվ իսկույն ստանում է միսը։ Գլուխը քիչ փաղաքշելով վերջացնում եք գործողությունը։ Դուք նորից, չշտապելով, վերցնում եք մսի հետեվյալ կտորը։ Շունը կերավ, բարձրացավ յէվ նորից նայում է ձեր ձեռքին։ Շունը, թափահարելով պոչը, նայում է մեկ մսին, մեկ էլ ձեր աչքերին։ Նա շարժում է ականջները, յերբ լսում է ձեր խոսքերը. «Նստի՛ր, ..նստի՛ր . նստիր...»։

Միսը բռնած ձեռքի շարժումը, շան գլխի դրությունը անհարմար լինելն ստիպում են նրան նստել յէվ նա իսկույն ստանում է միսը։ Այսպես հարկավոր է կրկնել մի քանի անգամ։ Այսպես վարժեցնելու հաջողությունն ապահովված է, վորովհետեվ այդ նրան հաճույք է պատճառում։

Իմ կենդանիները զանազան վարժություններ են կատարում—յերբեմն շատ բարդ, յէվ այդ բոլորը շնորհիվ նրա, վոր յես բարի յէվ քնքուշ վերաբերմունք եմ ցույց տալիս դեպի կենդանին։ Իմ կենդանիները ղեկավարում են գնացքը, հանգցնում են հրդեհները, փրկում են ջրում խեղդվող մարդկանց, ցույց են տալիս ֆոկուսներ յէվ այլն։ Ի հարկե, բարդ վարժություններ կատարելու համար անհրաժեշտ է ավելի շատ ժամանակ ու յեռանդ գործադրել։

Սակայն միշտ յէվ բոլոր դեպքերում աներեր է մնում մի բան—դա, սերն է դեպի կենդանին, բարի վերաբերմունքը դեպի նա։ Վոչ մի ծեծ, վոչ մի մտրակ։ Իսկ հասկանալով կենդանուն, մենք ավելի լավ ենք սկսում հասկանալ մարդուն։

**ԴՈՒՐՈՎ.**

# ՓՈՔՐԵՐԻ ՀԱՄԱՐ

## ԻԼՅԻՉԻ ԿԻՍԱՆԴՐԻՆ

Մանկատան յերեխաները վերադարձան ամառանոցից։ Կարգի-սարքի բերին տունը։ Հիմնել սկսեցին Լենինյան անկյուն։

— Նկարը բարձրից պիտի կախել,— ասում է Միշիկը։

—Այստե՞ղ,— հարցնում է Շմոն, պատրաստելով մեխը։

— Մի քիչ էլ աջ տար։



Մուխտարիկին տարան ծախելու

Շմոն մեխեց նկարը։ Դա շատ լավ նկար էր։ Լենինը, վերարկուն հագած, գլխարկը գլխին, ձյան յերեսով գնում է։ Հետո Լևիկն իրար կպցրեց 4 պլակատ և շրջեց սև վարագույն թղթի վրա կարմիր տառերով չորս անուն.— ԼԵՆԻՆ, ՎԼԱԴԻՄԻՐ ԻԼՅԻՉ, ԱՌԱՋՆՈՐԴ։

Կախեցին պլակատները։ Կարմիր թղթից աստղներ կտրեցին և նրանցից շղթաներ շինեցին։ Գուգուշը վազեց յեղբորը կանչելու, վոր դա անկյունի համար լամպոչկա պատրաստի, լույս բերի։

Վազգենն ու Շմոն այդ ժամանակ մի դարակ սարքեցին՝ Լենինին նվիրված գրքերը վրան դարսելու։

Գուգուշի յեղբայրը մինչև իրիկնապահ լույս բերեց անկյունը։

Ես ինչքա՜ն լավ է,— ծիծաղեց Նունիկը։

— Ինչքան լո՜ւյս է։

— Շատ լավ անկյուն յեղավ,— ասաց Լևիկը։

Հետո Շմոն թե՝ վոչ, մեր անկյունն էնքան էլ լավը չի։ Յես մի անկյունում տեսա գիպսից պատրաստած Լենինի կիսանդրին՝ գըլուխը։ Թեև փոքրիկ էր, բայց կարծես թե կենդանի գլուխ լիներ։ Առանց դրան անկյուն չի լինի։

— Մեր անկյունը Լենինի կիսանդրին անպատճառ պիտի ունենա,— ասում է Միշիկը։

— Չէ, կիսանդրի պիտի ունենանք, — ասում է Շմոն ու վերմակը քաշում գլխին։

— Ախր վո՞րտեղից,— հարց է տալիս Գուգուշը։

— Յես գիտեմ վորտեղից. այ, կտեսնես,— ակամա փնթփնթում էր Շմոն։

— Չե՛, պիտի ասես,— կպավ Գուգուշը,— ա՜նպատճառ ասա՛։

— Մենք Մուխտարիկին կծախենք։

Յերեխաներն ապշեցին։

Մուխտարիկը մի գեղեցիկ, ճկլիկ շուն էր և Լևիկի սիրելին։ Այդ բանի համար Լևիկին «շնախպեր» էին կանչում։



Մուխտարիկը թռավ Լևիկի կրծքին

Առավոտյա թեյից հետո Գուգուշը, Շմոն, Միշիկը հանկարծ ծլկեցին Լևիկից ծածուկ, Մուխտարիկի վիզը թոկ գցելով տարան շուկա ծախելու։

Պարանը շատ էր զրադեցնում Մուխտարիկին։ Մուխտարիկը կամ յետի վոտների վրա յեր

հենվում, կամ Գուգուշին իր հետ քարշ էր տալիս:

—Լավ շուն, լավ շուն, շուն տուր:

—Ի՞նչ արժե, այ շնավաճառ,—ծիծաղելով հարցնում է մի ծերունի ցուպը ձեռին:

—Հինգ ռուբլի, պապի, շատ լավն է. բերանով վոչ թե թռչուն, այլ ճանճ էլ է բռնում:

—Հա, հա, հա,—ծիծաղելով պատասխանում է ծերունին, ունեցած չունեցածս միայն 25 կոպեկ է:

Քիչ հետո մոտենում է մի պառավ կին.

—Տղերք, ծախում եք:

—Այո, հորքիր:

—Պառավ չի՞:

—Ի՞նչ եք տալիս, բայց մեր նայի: Դեռ յերկու տարեկան չկա: Լավ տուն է պահում. չի թողնում ճանճը տուն մտնի անցնի. մի ուրիշ յան է, ուրիշ:

—Գինն ինչ է:

—10 ռուբլի:

—Վո՛չ, 3 ռուբլի իրա հախ գինն է:

Վերջապես 5 ռուբլին առան և Մուխտարիկի թոկը տվին պառավի ձեռքը:

Մառան խոնավ, մի կիսանդրի գնեցին և զգուշությամբ տարան անկյուն. Ուրախությանը չափ ու սահման չկար:

Ծնած կիսանդրին նկարի տակ մի հարմար տեղ գրեց և ամրացրեց: Վրան կարմիր մահուդ քաշեցին: Մյուս ընկերները հարց ու փորձի բռնվան, թե վորտեղից են կիսանդրին: Եզրակ նկատեցին, վոր Մուխտարիկը չկա: Գաղտնիքը բացվեց: Լևիկը վեր-վեր էր թռչում:

Քնել էին: Մին էլ լսեցին մեկը դուռը ճանկռում է:

—Մուխտարիկն է,—վեր թռավ տեղից Գուգուշը:

—Մուխտարիկն է,—զարթնեց Միշիկը:

Իսկ Լևիկը դեռ քնած չէր: Նա դուռը բացեց: Մուխտարիկը թռավ Լևիկի կրծքին, դունչը երեսին քսեց: Լևիկը նրան գրկեց, ասելով.

—Ասա՛, պատմիր, վորտեղ էիր, Մուխտարիկս:

Մուխտարիկը, ի հարկե, չասաց, թե ինքը վորտեղ և ում մոտից էր փախել:

Յերեխաներն այդ դեպքից հետո Մուխտարիկին կանչում էին «փախստական»:

# ՆԱՄԱԿ ԳԵՐՄԱՆԻԱՅԻՑ

## ՎԻԵՆԱՅԻ ՄԱՐՏԻԿՆԵՐԻ ՅԵՐԵԽԱՆԵՐԻ ՆԱՄԱԿԸ

Խորհրդային Միության թանգագին ընկերներ!

Մենք այստեղ, մանկատանը, 25 հոգի յենք, վոր յեկել ենք Վիեննայից (Ավստրիա): Մեր հայրերը վիրավորվել, սպանվել կամ բանտերն են նետվել, վորովհետև 1927 թվի հուլիսի 15-ին հրդեհեցին գերագույն դատարանի շենքը, վորտեղ ֆաշիստական դատավորներն արդարացրին նրանց, վորոնք սպանել էին բանվորների: Վիեննայի դեպքերի մասին դուք յերևի լսել եք:

Մենք, յերեխաներս, նստած էինք տանը յեվ սպասում էինք մեր յեղբայրների յեվ հայրերի վերադարձին: Շատերը նրանցից չվերադարձան: Իսկ ով վերադարձավ՝ նա հետեվյալ որը ձերբակալվեց ոստիկանների կողմից:

Հիմա մենք ուզում ենք ձեզ պատմել կարմիր ոգնության (**Мопр**) մասին: Այն մասին, թե նա ինչպես մեզ մոտ ոգնության հասավ:

Վիեննայի մարտիկների յերեխաներին փոխադրեցին Գերմանիա, կարմիր ոգնության մանկատները: Բեռլինում մեզ դիմավորեցին բանվորները: Նրանք հոգացին մեր սննդի յեվ ապաստարանի մասին: Մեծ, կարմիր մանգաղով զարդարված ավտոմոբիլներով մենք անցանք Բեռլինի փողոցներով: Բոլոր բանվորները ճանապարհին կանգ էին առնում յեվ բարձր կանչում «Ռոտ ֆրոնտ»: (Կարմիր ճակատայինների վողջույնը:)

Բեռլինում մենք մնացինք չորս օր, առանձին ընկերների մոտ, վորոնք վերցրել էին մեզ իրենց մոտ: Հետո մենք գնացինք բանվորական մանկատուն «Բարկենհոֆը», վոր գտնվում է Բրեմեն քաղաքի մոտ: Մանկատունը մի փոքրիկ կալվածք է, վորն ունի 2 հեկտար հողամաս յեվ գտնվում է անտառի մոտ: Մենք ունենք այգի, մարգագետին, անտառամաս: Ունենք յերեք կով, յերկու հորթուկ յեվ 4 խոզ: Մեր շունը, վորի անունը Վոլֆ է, մարգագետնում հսկում է նրանց: Ունենք նաև 100 հավ յեվ 20 բադ: Մեզ համար տանն ունենք շատ սենյակներ: Առաջին հարկում գտնվում են խոհանոցը, ճաշասենյակը յեվ աղջիկների ննջարանը: Վերին հարկում գտնվում են տղաների ննջարանները յեվ ընդհանուր սենյակը:

Մեր բաղնիքը շատ հարմարություններ ունի: **Ունի չորս տաշտ յեվ մեծ ավազան լողանալու համար:**

Մենք ամեն օր յերկու անգամ լողանում ենք տաք ու սառը ջրով: Մեկ առավոտյան մեկ էլ յերեկոյան:

Մեր ճաշասենյակի պատերը նկարազարդված են: Ընկեր Հենրիխ Ֆոգելերը նկարել է այստեղ նկարներ, վորոնք ցույց են տալիս, թե ինչպես են բանվորները ապրում Գերմանիայում, ինչպես ԽՍՀՄ-ի բանվորներն ազատագրվեցին շահագործումից յեվ ինչպես է կարմիր ոգնությունն օգնում քաղաքական բանտարկյալներին:

ԽՈՐԵ՛Ն ՌԱԴԻՈ

# ԼՍԻ՛Ր, ՊԻՈՆԵՐԻԱ!!!

**Ինսցենիրովկա՝ պիոներական կենդանի լրագրերի համար**

(Ներս է մտնում կոմյերիտականը՝ բա-պառազինված հակագազով յեվ շրջում է բեմում՝ «Դիմենք լույսին ընդառաջ»-ի նըվագի տակ, ապա ռուպորը բերնին դնելով արտասանում է)

**Կոմյերիտ.**— Լսի՛ր, պիոներիա,
Լսիր, պիոներիա,
Լսիր.
Գիտե՞ս, ինչ են ասում
Յերկրի միլիոնները.
Մեր կարմիր յերկիրը
Ի՞նչ լոզունգ է հուզում.
Այդ ի՞նչ կանչ է հզոր,
Վոր միլիոնն է ցնցում.
Ի՞նչ կոչ է, վոր այսօր
Մեր յերկրովն է անցնում:

**Պիոներական խումբը.**— (Բեմի յետեվից, հառ-հառ)
Ռազ-մա-կա-նա-ցում.
(յերեվալով բեմի խորքում)
Ռազ-մա-կա-նա-ցում.
(առաջ գալով 3 քայլ)
Ռազմականացում.
Ռազմականացումը
Վողջ ազգաբնակչության,
Աշխատավորության:

**I Պիոներ.**— Բանվորի,

**II Պիոներ.**— Գյուղացու.

**Բոլորը.**— Ռազմականացումը
Յերկրի միլիոնների.

**III Պիոներ.**— Կոմյերիտականի,

**IV Պիոներ.**— Ամեն պիոների.

**Բոլորը.**— Ա-մեն-պի-ո-նե-րի:
(Յերգում են «Սպիտակ բանակը սեվ բարոնները» յերգի յեղանակով յեվ քայլում են բեմում):
Պիոներ բանակն է առաջ անցնում,
Իր լոզունգը – ռազմականացում,
Ու՞ր վոր Մոսկվայից մինչ Յերեվան
Այդ լոզունգն է հնչում հրամայող.
Դե, ուրեմ, պիոներներ,
Այդ կոչին պատրաստվենք,
Վոր կարողանանք ժամանակին
Գրավել զենքերը
Այդ հոգնածների,
Փոխարինել մեր բանակին:
(կրկնվում են վերջին յերեք տողերը)

**Կոմյերիտ.**— (ռուպորի միջով)
Է՜յ, պիոներիա՛,
Է՜յ, պիոներիա՛,
Է՜յ,
Դիր ականջդ յերկրի բաբախող սրտին,
Էյ, պիոներիա, յերկրի ձայնը լսիր:

**Բոլորը.**— Լսում ենք:

**4-ը.**— Մեր կարմիր յերկրի ականջի տակը
Հնչում են քայլերը

**Բոլորը.**— Պա-տե-րազ-մի.

**4-ը**— Յերևում է մեր դեմ նրա վտանգը:

**Բոլորը**— Է՜յ, պիոներիա, պատրաստվիր:

**Կոմյերիտ.**— Պիոներնե՛ր,
Իսկ ի՞նչ է պատերազմը.
Դա բացատրություն է կարոտ.
Այ, տեսեք,
Ահա մի տակառ
Ու մեջը վառոդ...
(Բեմի մեջտեղը դնում է մի փոքրիկ կարմրած տակառ)

**Բոլորը.**— Վառո՞դ...

**Կոմյերիտ.**— Վառոդով լի այս տակառը
Դա ինքը պատերազմն է:
Մոտենում է այս տակառին
Անգլիչան Օստեն Չեմպերլեն.
(Գալիս է Չեմբերլենի դիմակով մի պիոներ)

**Չեմբերլեն.**— Միստր Չիչերին,
Յեկեք քիչ զրուցենք, էլի:

**Կոմյերիտը.**— (Վորպես Չիչերին) Բայց գլուխ չունեմ վեճերի,
Թեպետ դա ձեզ շատ է հաճելի,
Իսկ յեթե ուզում եք զրուցել,
Տակառից այս կողմ հրամեցեք:

**Չեմբերլեն.**— Ո՜, այդ միստր Չիչերին,
Յես էլ գլուխ չունեմ վեճերի.
Դու գիտես՝ թե յես էլ,
Հերս էլ,
Մինչև իսկ տղաս էլ
Վորքան ենք խաղաղասեր...
Դուք ծխել եք ուզում սակայն,
Հանեցեք լավագույն սիգար...
(Տալիս է սիգար յեվ ծափ է տալիս)
Է՜յ, լակե՛յ, — մարշալ Պիլսուդսկի,
Թանկագին հյուրին մի լուցկի:
(Մտնում է Պիլսուդսկին, կանգնում է վառոդի տակառի մոտ յեվ լուցկին վառում)

Պիլսուդսկի. — Լուցկի թանկագին հյուրին,
Համեցեք, պան Չիչերին։
Չիչերին. — Շնորհակալ եմ,
Պան Պիլսուդսկի.
Մի քիչ այս կողմը բերեք լուցկին։
Չեմբերլեն. — Ոչ, այս կողմ, խնդրեմ։
Պիլսուդսկի. — Այո՛, խնդրեմ, այս կողմ։
Չիչերին. — Ոչ, մի՛ քիչ այս կողմ։
(Տրամակցության միջոցին Չեմբերլենն ու Պիլսուդսկին աշխատում են նրան մոտեցնել տակառին. Չիչերինը չի մոտենում)
Չեմբերլեն. — (Բարկացած Պիլսուդսկու վրա)
Տուր, այստեղ տուր լուցկին,
չնիկս,
Մի պատերազմ սարքելում էլ
անշնորհք ես։
(Դուրս է անում Պիլսուդսկուն)
Համեցեք, միստր Չիչերին։
(Վառում է Չիչերինի սիգարը յեվ առանց հանգցնելու, լուցկին ուզում է գցել վառոդի տակառը)
Չիչերին. — Փո՛ւհ. (հանգցնում է լուցկին)
(Չեմբերլենը նորից է վառում՝ լուցկին փորձում է նետել տակառը)։
Չիչերին. — Փո՛ւհ. (նորից հանգցնում է այն։ Չեմբերլենը դժգոհ, փնթփնթալով դուրս է գնում)
Հիմի պիոներներ, հասկացա՞ք, թե
ինչպես են ուզում բռնկեցնել
պատերազմը։
Բոլորը. — Այո, հասկացանք (պատուգա յեվ ապա
քայլում են յերգելով)
Սպիտակ բանակը, որը Չեմբերլեն
Ուզում են նոր պատերազմ վառել,
Բայց Կարմիր ու անհաղթ բանա-
կը մեր
Պատրաստ է նրանց դեմն յելնել։
Դե, ուրեմն, պիոներներ,
Այդ կռվին պատրաստվենք,
Վոր կարողանանք ժամանակին
Գրավել դիրքերը
Բոլոր հոգածների,
Փոխարինել մեր բանակին։
(Վերջին 3 տողերը կրկնում են յեվ յերգի յեղանակով շրջում են բեմում, ապա կանգնելով մի շարքի վրա, արտասանում են)
Ոգնենք մեր ծնողներին,
Ավագ յեղբայրներին՝
Բարձրացնելու մեր տնտեսությունը,
Լավ տնտեսությամբ,
Լավ պատրաստությամբ
Արագացնելու մեր հաղթությունը։
Կոմյերիտ. — Լսիր, պիոներիա,
Լսիր,
Որպես յողունգը իմացիր,
Ռազմականացիր։
Բոլորը. — Ռազմականանում ենք։
(Ձեռքի փայտերը վորպես հրացաններ գործածում են, կատարելով զանազան պարզ վարժություններ)։
Կոմյերիտ. — Ռազմական գործին լավ ծանոթացիր,
Պատրաստվիր դառնալ թնդանո-
թաձիգ։
(Բոլորը կազմում են թնդանոթաձև բուրգ։ Յերկու պիոներներ դառնում են անիվներ, յերկուսը՝ սռնակ յեվ նրանց մեջ մեկը՝ վորպես թնդանոթափող)։
Բոլորը — Պատրաստվում ենք դառնալ թըն-
դանոթաձիգ։
Բո՜ւմ...
Բո՜ւմ...
Բո՜ւմ...
(Կրակում են այնպես՝ վոր անիվ-պիոներները գլուխկոնծի յեն տալիս յետ յեվ առաջ)։
Կոմյերիտ. — Լցվիր հաղթության հավատով.
Պատրաստվիր դառնալ ավիատոր,
Պատրաստվիր նվաճել ոդը,
Հաղթության պայմանը այդ է։
I Պիոներ. — Վորպեսզի գնդակն իզուր չանցնի,
Պետք է լինենք լավ նշանաձիգ։
II Պիոներ. — Իսկ դրա համար,
Պիոներ ընկերներ,
Պետք է ունենալ ռազմական
անկյուններ։
III Պիոներ. — Պետք է կազմակերպել
Հրաձիգ խմբեր,
Յեվ լավ սովորել
Անսխալ խփել։
Կոմյերիտ. — Պետք է սովորել, պիոներներ,
Սարքել ավիո-մոդելներ,
Յեվ հետո ունենալ դրսում
Ավիո-մոդելի մրցում։
(Պիոներ բաց է թողնում մի ավիո-մոդել)։
Կոմյերիտ. — Բայց էլի մի բան պակաս է։
Բոլորը. — Այո՛.
Պետք է նվաճել գազը։
Կոմյերիտ. — Ճիշտ է։
Գազը, չգիտես, վորտեղից է ծնվում,

Մտնում է մեջդ ու փոշոտացնում։

**Բոլորը.** — Փռշտ, փռշտ, փռշտ, փռշտ...
(փռշտում են)։

**Կոմյերիտ.** — Գազը խառնում է տալիս կոկորդդ,
Ասում է ծիծաղիր, հա ծիծաղիր։

**Բոլորը.** — Հա՛-հա՛-հա՛-հա — (ծիծաղում են)։

**Կոմյերիտ.** — Բայց երբ այդ բանը կհասկանաս
Դեմքիդ կքաշես հակագազ։

**Բոլորը.** — (Յերգում են «կեցցե Լենին» յեղանակով)
Սարսափելի չէ մեզ
Ոչ մի թույն ու գազ,
Քանի որ նրա դեմ
Ունենք հակագազ։
Սարսափելի չէ մեզ
Ոչ մի թշնամի,
Քանի որ հզոր,
Անհաղթ ենք հիմի։

**I Պիոներ.** — Վորպեսզի հաղթենք իր ժամանակին
Մեր առաջ դրած մեծ նպատակին,
Պետք է մոտ լինել Կարմիր բանակին,
Մոտ լինենք նրա կենցաղին, կյանքին։

**III Պիոներ.** — Կարմիր բանակից պիտի ուսանել,
Պետք է ունենալ եքսկուրսիաներ
Դեպի զորանոցն ու դեպի լագերը,
Սովորել թե ինչ հաղթանակներ է,
Վոր նա տաս տարում անհաղթ
տարել է։

**3-ը միասին.** — Կարմիր բանակը պայքարեց
Տաս տարի
Ցեխ ջախջախեց մի քանի
Սև գեներալի.
Պատմենք իրար, պիոներներ,
Են հաղթանակներ,
Վոր տարել է թշնամու դեմ
Կարմիր բանակը։

**Բոլորը.** — (Յերգում են վերջին 4 տողերը «Ով չի տեսել»-ի յեղանակով)
Պատմենք իրար, պիոներներ,
Թե Կարմիր բանակ
Քանի սև շուն գեներալ է
Արել շանսատակ։

**I Պիոներ.** — Մի որ շներից յերկուսը, հանկարծ,
Վրանգելն ու Յուդենիչ,
Յելան վրա տվին մի քանի անգամ
Ընդդեմ մեր կարմիր Պիտերին։

**Բոլորը.** — («Մենք դարբիններ ենք»-ի յեղանակով)
Սկսվեց կռիվը և թունդ, և յերկար,
Մեր Պիտերի պատերի տակ,
Մինչև վոր Կարմիր բանակը մեկանց
Արավ ցրիվ ու շանսատակ։

**II Պիոներ.** — Իսկ յերբ զինվորը բեզարած,
Քանդում էր շինելի կոճակը,
Տեսավ,
Հրեն, պոչը ցից արած,
Իր վրա յե գալիս Կոլչակը։

**Բոլորը.** — («Սպիտակ բանակի» յեղանակով)
Նա էլ էր բուրժույի սև շներից,
Բայց մի քիչ ավելի կատաղի,
Ցեխ բանվորն ու զինվորը նորից
Նրա մեծ կտորն ականջը թողին։

**III Պիոներ.** — Հետո էլ ուրիշ շներով
Ուզեց թաթը դնել մեր յերկրին,
Մի ուրիշ շուն գեներալ,
Անունը մեզ հայտնի Դենիկին։

**I Պիոներ** — Նա յեկավ...

**II «** Յեկա՛վ,

**III «** Հա յեկավ,

**IV «** Հասավ Մոսկվի դռները,

**Բոլորը** — Մինչև վոր մերոնք էլ մեկանց
Վրա տվին, կորցրին հետքը։

**I-ը** Իսկ մեզ մոտ

**II-ը.** — Ես մեր Կովկասում,

**III-ը.** — Մի դաշնակ

**IV-ը.** — Մուսավաթ, մենշևիկ

**Բոլորը** — Ընթակել եյին հավասով,
Քեֆ եյին քաշում մեր հաշվին։
(Յերգում են «Սպիտակ բանակի» II-րդ մասի յեղանակով)
Բայց Անդրկովկասի բանվորն ու
գյուղացին
Ձեռք-ձեռքի նրանց դեմ յելան,
Հետո մեր յերկրից դուրս շպրտեցին
Բերին Հոկտեմբեր հուրհուրան։
(Կրկներգ վերջին յերկու տողի։ Յերգի յեղանակով քայլում են բեմում, ապա ճամարտվելով նորից կազմում են կիսաշրջան)

**III Պիոներ.** — Մեզ մոտ էլ բանվոր-գյուղացին,
Դաշնակի դեմ վոտքի կանգնեցին,
Քշեցին նրան դենը ծովից,
Ու հետո եսպես յերգեցին
Պարոն Խատիսովին. —
«Մնաք բարով.
Զգաք գարով,
Պարոն Խատիսով,
Ես յերկիրը մերն է հիմա,
Մերն էլ կմնա։» (կրկնել)

**Բոլորը.** (Կրկնում են «Մնաք բարով» յեղանակի տակ քայլում են բեմում յեվ ապա նորից կանգնում մի շարքով)

**3 Պիոներ.** — (Յերգում են «Я кмо смена»-յի յեղանակով)
Ո՞վ բերավ մեր հաղթանակը. (կրկ.)

**Բոլորը.** — Մեր բանակը կարմիր, մեր բանակը. (կրկ.)

**3 Պիոներ.** — Ո՞վ է մեր մեծ յերկրի ուժը,
Անդրկովկասի մեր ուժը,

**Բոլորը.** — Կարմրադրոշն, ընկերներ, կարմրադրոշը (կրկ.)

**3-ը.** — Կեցցե մեր մեծ հաղթանակը (կրկ.)

**Բոլորը.** — Յեվ բանա՛կը կարմիր, և բանակը,
Մեր բանակը կարմիր, մեր բանակը։

**3-ը.** — Տանք Կարմիր բանակին ուռա (կրկ.)
Պիոներիա, ուռա պիոներիա... (կրկ.)

**Բոլորը.** — (Կրկնում են «Տանք կարմիր բանակին» խմբային, յեվ այդ յերգի յեղանակով շրջում են նորից բեմում, ապա դիմում են դեպի դահլիճը)

**Կոմյերիտ.** — (Դուրս է գալիս նորից յեվ ռուպորով արտասանում է)
Լսիր, պիոներիա,
Լսիր, պիոներիա,
Լսիր.
Այդ ի՞նչ կանչ է հզոր,
Վոր յերկրովն է անցնում,
Ի՞նչ կոչ է, վոր այսօր
Միլիոններն է ցնցում։
(Դահլիճը, վորը նախապատրաստված է ժամանակից պիոներների կողմից, վոտքի յե կանգնում յեվ արտասանում՝ և շեշտերով).
Ռա՛զ-մա՛-կա՛-նա՛-ցո՛ւմ.
Ռա՛զ-մա՛-կա՛-նա՛-ցո՛ւմ.
Ռա՛զ-մա՛-կա՛-նա՛-ցո՛ւմ։
(Նվագախումբը մարշ է նվագում)

**ՎԱՐԴԳՈՒՅՐ**

28 թ. Յերևան

# ԻՆՉ ՊԵՏՔ Է ԿԱՐԴԱՆ ՊԻՈՆԵՐՆԵՐԸ

**«ՈԴԱՉՈՒ ԱՐԱՄԸ».** — Փոխադրեց Շ. Բողատիրյան, պիոներական սերիա, Պետհրատ, 1928 թ.

Այս գրքույկի հրատարակությունը և ժամանակին է, և տեղին։ Գրքույկի բովանդակությունն այժմեական է, պիոներներին հետաքրքրող նյութի մասին։

Գյուղական դարբնի վորդի Արամը, քեռի Սիմոնի պատմածների ազդեցության տակ, վորոշում է մի սավառնակ շինել և բա՜րձր, բա՜րձր թռչել։ Նա յուր մտադրությունն իրագործում է։ Արամը ձեռք է բերում սավառնակ պատրաստելու մի ձեռնարկ և դարբին հոր աջակցությամբ կառուցում սավառնակը։

Վարդավառի տոնին Արամը դուրս է բերում սավառնակը։ Ժողովուրդը թողնում է յեկեղեցին և հավաքվում թամաշի։ Տերտերի անեծքների տակ Արամը հաջողությամբ ավարտում է իր թռիչքը։

Ահա այս է գրքի բովանդակությունը։ Պիոներները հետաքրքրությամբ կկարդան այս պատմվածքը։

**ՄԱՆԱՍԻՅԵՎԱ** — «Գորտին պատեց». — Թարգմանեց Սիմակ. Պետհրատ, 1928 թ., գինը 20 կոպ.։

Փոքրիկ մանուկները չեն սիրում լպրծուն գորտին։ Այս գրքույկում նկարագրված է մի փոքրիկ աղջիկ, վորը վախենում է գորտից։ Բայց մի որ նա տեսնում է գորտին կլավանի ճանկերում և ազատում նրան։

Գրքույկի նպատակն է սեր զարթեցնել դեպի կենդանիները։

Գրքույկի խոշոր տառերով տպված լինելը և համապատասխան գունավոր նկարները հեշտացնում են, վոր պատմվածքը հեշտությամբ կարդացվի 7-11 տարեկան յերեխաների կողմից։ Լեզուն պարզ է, հասկանալի։ Լավ կը լինի՝ յեթե մեր պիոներ ընկերները կարդան այս գրքույկն իրենց փոքր քույրերի, յեղբայրների և հոկտեմբերիկների համար։

**ՄԻՇԻԿ**



